# ՊԻՈՆԵՐ



№5 ՍԵՊՏԵՄԲԵՐ - 1927 հոռ

# ՌԱԶՄԱԿԱՆԱՑՆԵՆՔ ՄԵՐ ՇԱՐՔԵՐԸ

## ՄԱՍՆԱԿՑԵՆՔ ՀՐԱՁԳԱՅԻՆ, ՍԱՆԻՏԱՐԱԿԱՆ, ԱՌԱՋԻՆ ՈԳՆՈՒԹՅԱՆ, ՅԵՎ ԱՎԻԱՑԻԱՅԻ ԽՄԲԱԿՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ

Միջազգային ներկա դրությունը պահանջում է մեզանից լուրջ ուշադրություն դարձնել Խորհրդային յերկրի պաշտպանության հարցերի վրա։

Կապիտալիստական աշխարհը նորից փորձում է հարձակվել պրոլետարիատի դիկտատուրայի յերկրի վրա, ինչպես 1917—21 թվերին էր, քաղաքացիական կռվի տարիներին։ Մեր յերկրի բանվորները և գյուղացիները, վորոնց



Պիոներ,—նետաձիգ

համար շատ թանկ է Խորհուրդների իշխանությունը, պիտի պատրաստվեն յերկրի պաշտպանության համար, պիտի յետ մղեն Խորհրդային իշխանության դեմ ուղղված հակառակորդի բոլոր փորձերը։

Հերոսական պայքարը՝ քաղաքացիական կռվի տարիներին՝ ցույց տվեց, թե ինչքան մենք ակտիվ ենք և պատրաստ՝ մեռնելու Խորհուրդների հաղթանակի համար։ Այդ պայքարում հատկապես աչքի յեր ընկնում յերիտասարդությունն իր նվիրվածությամբ, հերոսությամբ, ինքնազոհությամբ։ Յեվ ներկա պատերազմում, յերբ դեմ առ դեմ կկանգնեն մի կողմից կապիտալիստական պետությունները և մյուս կողմից՝ ամբողջ աշխարհի պրոլետարները՝ Խորհրդային Միության հետ, մենք էլ ավելի պատրաստ պիտի լինենք. ռազմականապես կրթված, պիտի ծանոթ լինենք զինվորական տեխնիկային, ավիացիային, քիմիային, վորպեսզի միակուռ, պողպատե շարքերով հաղթենք մեր կապիտալիստական թշնամուն—բուրժուազիային։

Այսօր մեր յերկիրն անցել է պաշտպանության աշխատանքներին։ Կոմյերիտական կազմակերպությունները նույնպես անցել են իրենց անդամների զինվորական պատրաստության գործին, իրենց շարքերի ռազմականացմանը, ռազմական պրոպագանդայի ուժեղացմանը բանվորագյուղացիական յերիտասարդության լայն խավերի մեջ։

Անհրաժեշտ է, վոր պիոներական կազմակերպությունը նույնպես անցնի այդ աշխատանքին։ Ապագա պատերազմում պիոներները շատ բան ունեն անելու։ Հարկավոր է հենց հիմիկվանից անցնել ռազմական գիտելիքների տարածմանը պիոներական կազմակերպության մեջ։ Հրաձգային սպորտի, կապի, առաջին ոգնության, սանիտարական, ավիացիայի և այլ խմբակների աշխատանքներին մասնակցելով մենք զարկ կտանք այդ գործին։

Յուրաքանչյուր պիոներական կազմակերպություն, կոլեկտիվ, ջոկ, կոլվար ու պիոներ պետք է ռազմականացնեն իրենց շարքերը և պատրաստ պիտի լինեն՝ մեր յերկրի առաջին կոչին դուրս գալ նրան պաշտպանելու։

Պիոներական կազմակերպությունը, ինչպես միշտ, այնպես էլ այս գործում պիտի պատրաստ լինի։

ՀԼԿՅԵՄ Կենտկոմի քարտուղար՝ Լ. Մարտիրոսյան

---

ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրաստ՛

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՈՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

Խմբագրության հասցեն — Յերեվան, Ռուբենի № 2

№ 5 — ՍԵՊՏԵՄԲԵՐ — 1927 Թ.

ՍԱՐԻՆ

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ ՅԵՎ ՄԵՐ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ



Ուսումնական տարին սկսվել է։ Մոտենում է Հոկտեմբերյան հեղափոխության տասնամյակի տոնակատարությունը։ Սոցիալիստական շինարարության ճանապարհին՝ խորհ. յերկրի ինդուստրացման իրականացման հարցը, պատերազմի վտանգը դրված են լայն աշխատավորական մասսաների առջև։

Սրանք են և այն հիմնական հարցերը, վոր այժմ կանգնած են մեր առաջ՝ դպրոցական նոր տարին սկսելիս։

Խորհրդային դպրոցն այդ հարցերի կողքով չի կարող անտարբեր անցնել, այն հարցերը, վոր կանգնած են խորհրդային իշխանության առջև՝ պետք է ներս մտնեն և մեր աշխատանքի դպրոցը։

Պիոներական կոլեկտիվները և աշակերտությունը պետք է ակտիվ կերպով մասնակցեն հետևյալ հարցերի լուծմանը.

Առաջին — կանոնավորել դպրոցական կյանքը՝ աշակերտների հետ միասին. այսինքն հետևել, վոր ժամանակին ստեղծվեն հարմարություններ կանոնավոր պարապելու համար — շենք, դպրոցական ինվենտար, դասական պիտույքներ, գրենական իրեր, կանոնավոր հաճախում, լուրջ վերաբերմունք դեպի պարապմունքները, կազմակերպված աշակերտական ինքնավարություն, ներքին աշխատանքային դիսցիպլինա։

Պետք է հետևել, թե վորչափ և ինչպես է տարվում աշակերտների աշխատանքը դպրոցի հողամասերի վրա, գրադարանում, թանգարանում, աշկոոպում և յեթե կան արհեստանոցներ՝ նաև այնտեղ։ Պատի լրագրի գրությունն ինչպես է։ Ինչպես է տարվում դպրոցների կողմից հասարակական հանրօգուտ աշխատանքը գյուղում, քաղաքում, վորևէ արտադրության մեջ։

Հետևյալ հարցը — դա դպրոցի մասնակցությունն է Հոկտեմբերյան հեղափոխության տասնամյակի տոնակատարությանը։

Անհրաժեշտ է, վոր դպրոցը լայն մասսաներին ծանոթացնի, թե ինչպես խավար, հետամնաց, ճնշված ժողովուրդները՝ Հոկտեմբերի շնորհիվ ազատագրվելով, ստեղծել են հանրապետություններ ու. տարեց տարի, կատարվում է վերելք տնտեսական, շինարարական, կուլտուրական կյանքի ասպարեզներում. թե ինչպես խորհրդային յերկիրը ցաք ու ցրիվ, առանց ծրագրի տնտեսությունները ուսումնասիրելով, հաշվի յէ առնում ու. վորոշ ծրագրով առաջ տանելով, ամրացնում է սոցիալիստական

հասարակարգի հիմքը։ Պետք է ուսումնասիրություններով, զեկուցումներով, թվական տվյալներով, դիագրամներով, ցուցահանդես-ցերեկույթ-յերեկույթներով դպրոցն ել մասնակցի ընդհանուր տոնակատարությանը։

Հետևյալ հիմնական հարցն յերկրի ինդուստրիացումն է։ Յեթե ուզում ենք կառուցել սոցիալիստական հասարակարգ — պետք է ամեն կերպ աշխատենք արագությամբ մեր յերկրի արդյունագործությունը և գյուղատնտեսությունը յենթարկել մեքենայացման։ Դպրոցը գյուղում ամենից առաջ պետք է ամեն կերպ աջակցի ինդուստրացման փոխառության տարածմանը և, դրա հետ միասին, ամեն ջանք պետք է թափել—հնարավորություններ ստեղծելու՝ դպրոցն ել ինդուստրացման յենթարկելու—այսինքն՝ կազմակերպել այն արհեստանոցները, վորոնք պետք է լինեն՝ բայց չկան մեր դպրոցներում, մեքենայացման յենթարկել դպրոցի գյուղատնտեսական աշխատանքները։

Վերջապես՝ պատերազմի վտանգը։ Մեր թշնամիներն ամենայուրջ կերպով պատրաստվում են, զինվում, դավեր են լարում, վոր մեզ ոտակեն ու վոչնչացնեն։ Նրանք իրենց դպրոցականներին, կանանց պատրաստում են մասնակից դարձնելու այդ կռվին։

Մենք կռվել չենք ուզում, մենք ուզում ենք խաղաղ պայմաններում շարունակել մեր աշխատանքը—դրա համար ել մենք պետք է նույնպես պատրաստ լինենք, վոր վտանգի ժամանակ կարողանանք պաշտպանել Հոկտեմբերի հաղթանակները։ Մեր մասսաները, դրա հետ և մեր դպրոցները, պետք է յենթարկվեն ռազմականացման։

Ահա այն գլխավոր հարցերը, վոր դրված են մեր առջև դպրոցական տարին սկսելիս։ Մեր պիոներական կոլեկտիվները, աշակերտությունն ու ուսուցչությունն իրենց ուժերը չեն խնայի բոլոր հարցերին դրական լուծում տալու համար։

Ամրացնենք, ուժեղացնենք աշխատանքի դպրոցը, այդ ել մի զենք է՝ մեր թշնամիներին հաղթելու համար։

---

# ՄԵՐ ԼԱՎԱԳՈՒՅՆ ՆՎԵՐԸ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՏԱՍՆԱՄՅԱԿԻՆ

## ՍՏՈՒԳԵՆՔ ՄԵՐ ՇԱՐՔԵՐԸ, ՊԱՐԶԵՆՔ ՄԵՐ ՈՒՆԵՑԱԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մենք շատ կոլեկտիվներ ունենք, վորոնց աշխատանքը հազիվ հազ է առաջ գընում։ Այդ նրանից է, վոր նրանք չեն իմանում՝ թե ինչի՞ց սկսել, ինչպե՞ս աշխատել, վորպեսզի աշխուժացնեն ամբողջ կոլեկտիվի կյանքը։

Յեվ ունենք շատ կոլեկտիվներ, վորոնց աշխատանքը շատ լավ է առաջ գընում։

Մի քանի կոլեկտիվներում պիոներները զվարճալի և խելացի կերպով կազմակերպում են իրենց ժամանցը—կազմակերպում են եքսկուրսիաներ, կոլեկտիվ կերպով թատրոն ու կինո յեն գնում, ռազմական արշավներ կազմակերպում, պատրաստում թռչող մոդելներ, ռադիո-ընդունիչներ։

Կոլեկտիվներ ել կան, վորոնք լավ բանջարանոց են կազմակերպել, խնամել են այն, հավեր են պահում, և այլն։ Աշխատանքի այսպիսի լավ կողմեր մեր կոլեկտիվներում հիմի շատ կան։

Այս բոլորն ասում են, վոր կոլեկտիվներն սկսել են աշխուժացնել իրենց աշխատանքը։

Իսկ արդյոք, տվե՞լ ենք մեր ունեցած նվաճումներն ուրիշ կոլեկտիվների։

Վոչ։ Յեվ այդ վատ է։

Յեվ ահա, վորպեսզի իմանանք՝ թե ինչպիսի նվաճումներ ունենք և վորպեսզի տանք այդ բոլորն ուրիշ կոլեկտիվների, պիոներների Կենտրոնական բյուրոն հայտարարել է պիոներական նվաճումների ուսումնասիրություն։ Յուրաքանչյուր կոլեկտիվ, վորը կատարել է հետաքրքիր աշխատանք, պիտի այն նկարագրի «Ավանգարդում» և «Պիոներում»։ Բայց մեկեն այդ բոլորը նկարագրել չի կարելի։ Դրա համար պիտի կոլեկտիվում նախապատրաստական աշխատանք կատարել։

Ի՞նչ պիտի անել։

Հարկավոր է ջոկատներում քննություն անել, թե ինչ նվաճումների մասին կարելի յե գրել։



Պետք ուսումնասիրել այդ նվաճումներն իրենց բոլոր կողմերով. Որինակ, դուք անտառապատանների մեջ լավ աշխատանք եք տարել։ Հարկավոր է ուսումնասիրել այդ աշխատանքը։ Ինչի՞ց սկսեցիք, ո՞վ էր նախաձեռնողը, ինչպիսի՞ դժվարությունների յեք հանդիպել, ի՞նչպես եք դրանք հաղթահարել։ Ինչ ձևով եք աշխատանքն առաջ տարել, ինչպե՞ս է պիոներների ինքնագործունեությունը, հետաքրքի՞ր է այդ աշխատանքը պիոներների համար և այլն։ Այսպես պիտի ուսումնասիրեք ձեր ունեցած նվաճումները։

Իհարկե՝ այդ բոլորի համար պիտի հավաքել փաստեր, թվեր, նկարներ, դիագրամներ, որագրերից քաղվածքներ Այդ ամենով պարզ, լավ ու հետաքրքիր կերպով կարող եք ձեր ունեցած նվաճումներն ի հայտ բերել։

Ուսումնասիրության աշխատանքներին հարկավոր մասնակից դարձնել նաև անկազմակերպ պատանիներին և ծնողներին Այդ կարելի յե անել՝ կազմակերպելով ցուցահանդես, յերեկույթ, յեղած նվաճումների մասին գրելով պատի լրագրում։

Պիոներներ, մոտենում է Հոկտեմբերի 10-րդ տարեդարձը Խորհուրդների աշխարհը պատրաստվում է դիմավորելու այն՝ ցուցադրելով իր ունեցած հսկայական նվաճումները թե տնտեսական և թե կուլտուրական շինարարության ճակատում։

Պիոներական կազմակերպության լավագույն նվերը Հոկտեմբերի 10-րդ տարեդարձին կլինի այն, վոր նա, ստուգման յենթարկելով իր ամբողջ աշխատանքը, ցույց կտա այն բոլոր նվաճումները վոր ունեցել է յերրորդ սերունդի կազմակերպությունը՝ կոմունիստական կուսակցության և լենինյան կոմսոմոլի ղեկավարությամբ։

Կ. Մ.

Գ. ԲԵԼԻԽ

## «ԿՈՄՄՈՒՆԱՅԻ ՁԱՅՆԸ»

(Փոխադրությունն ռուսերենից)

Գարուն էր. լեռնային յերկրի գեղեցիկ ու պայծառ գարուն։ Սարերից փչում էր թեթև դեռ սառը, բայց զուրեկան քամի։

Մանկատան բակի կանաչները սկսել էին բարձրանալ. արևի զվարթ շողերը լցնում էին մանուկների — պատանիների յերակներն արյունով, ու թրթռալու, վազվզելու ցանկությունն անհուն էր նրանց մեջ։ Բակում խաղալ — ցատկոտել անհնար էր — ցեխ էր ու հալված ջուր - վորի միջից ծլած կանաչն էր հրապուրում։

— Վազգեն, արի գերի խաղանք, — առաջարկեց Սեթոն, վորն ուղիղ գաղութից էր ուղարկված մանկատուն ու դեռ իր անհանգիստ բնույթը պահել էր։

— Խաղանք, — համաձայնեցին Վազգենը, Պողոսը յեվ մյուս յերեխաները։

Նրանք խաղում էին մանկատան մեծ ու լայն միջանցքում, վոր առաջ զորանոց էր յեղել։

Այդ միջոցին մանկատան կառավարիչ ընկ. Խոբենը, իր ծռված ուսերը հավաքած, ձեռքերն յետևը դրած, բարի ու կնճռոտած դեմքը (նա նախկին ուսուցիչ էր) խոժոռած, կանգնած էր պատի մոտ յեվ մըտածում էր։



... Քիչ մնաց յերեխը պատին կպչեր։

Հանկարծ Սեթոն չկարողացավ իր թափը պահել յեվ վազելով այնպես կպավ կառավարչին, վոր

նրա չորացած ծողերի նմանող վոտքերը հազիվ կարողացան պահել նրան—քիչ մնաց յերեսը պատին կպչեր։ Սեթոն հանցավորի պես կուչ յեկավ յեվ մըտածում եր՝ թե ինչպե՞ս արդարանա, բայց յերբ նայեց ընկ. Խորենի բարկությունից կարմրած դեմքին, աչքերի արտահայտությունից հասկացավ. վոր բարկությունն անցնում ե։



Դուռը մի կերպ բաց արին

— Սեթո, յե՞րբ պետք ե խաղի գաս։

— Ընկ. Խորեն, անկեղծ եմ ասում, պատահական բան եր, հանկարծ կպա ձեզ. մի նեղանար։

— Չե՛, ա՛յ տղա, չեմ նեղանում, բայց դե հո ամբողջ որն իրար հրելով չպի՞տի զբաղվեք։ Դե, արդեն մեծ տղաներ եք։ Չկարծեք, թե ես «խրատներ» եմ տալիս. միայն յես կարծում եմ, վոր ավելի օգտավետ գործով կարելի յե զբաղվել։

— Ա՛խ, ընկ. Խորեն, ասում եք, ելի՛, ախր ինչո՞վ զբաղվենք—ի՞նչ անենք.—շրջապատեցին ընկ. Խորենին բոլոր տղաները յեվ սկսեցին մտերմորեն զրուցել նրա հետ։

— Ա՛յ ամոթ ձեզ, ամո՛թ, չեք ե՞լ ամաչում, վոր զբաղվելու բան չեք գտնում։ Ա՛յ, օրինակ, մյուս մանկատներն իրենց պատի լրագիրն ունեն, իսկ մենք չունենք. վոր խելոք, աշխատասեր տղաներ լինեք, կկազմակերպվեք ու մեր մանկատունն էլ պատի թերթ կունենա։ Ա՛յ քեզ լավ գործ։

2.

Սեթոն դասարանի անկյունն եր քաշվել, մտածում եր. նրա շարժումն ու սիրուն աչքերում ինչ վոր հոգս, ինչ վոր մտորում կար։

Ցերեկոյան, ննջարանում, նա իր մոտ հավաքեց իր մոտ ընկերներին՝ Պողոսին ու Վազգենին՝ ու ասաց.

— Գիտե՞ք ինչ, ընկ. Խորենի ասածը խելքումս նստել ե ու ինձ հանգիստ չի տալիս. յեկեք լրագիր հրատարակենք։

— Հենց մենք յերեքո՞վ,—կասկածամտությամբ հարցրեց Վազգենը։

— Հ՛ա, ի՞նչ ե վոր. հենց յերեքով չե՞նք կարող։

— Ե, դե ձեռք վերցրեք, տո՛, ի՞նչ ձեր բանն ե, են ել ես գիշերվա կեսին—դե՛, դե՛, ավելի լավ ե հանվենք՝ քնենք,—ասաց Պողոսը։

— Չե՛, յես վոր ասացի, կանեմ, յես Սեթոն չըլինեմ, թե առավոտ թեյի ժամանակ սեղանատան պատին լրագիրը կպած չլինի։

— Դե կորի, ե, տո՛ մեծախոս,—ասաց Պողոսը, շուռ յեկավ ու սկսեց կոշիկները հանել։

— Դե՛ կտեսնես. Վազգեն, արի։

Վազգենն ու Սեթոն առանց աղմուկի ննջարանից դուրս յեկան յեվ մտան ուսուցչանոցի կողքի իրենց դասարանը։

— Սեթո՛, քունս տանում ե. ավելի լավ ե թողնենք, եգուց կգրենք։

— Քնենք, քնենք, - հուզված աղաղակեց Սեթոն, —մի մտածիր, ե, տո խելոք, վոր վաղն առավոտ պատին կպցրած լրագիրը բոլորը կարդան՝ ի՞նչ բան կլինի, ե...

— Ճիշտ վոր ե՜։

Մթության մեջ Սեթոն խարխափելով գտավ ելեկտրական ճրագի կոճակը, պտտեցրեց, յեվ փայլուն լույսը վողողեց դասարանը։

— Դե՛, Վազգեն, սկսենք,—ուրախ-ուրախ ցատկոտում եր Սեթոն։



Յերկու խմբագիրները նստած են իրար դիմաց

Վազգենը փոթկացրեց ու ասաց.

— Սկսենք, հա սկսե՛նք. վո՞նց ես սկսում։

— Ինչո՞ւ։

— Դե վոչ թուղթ ունենք, վոչ ներկեր, վոչ վըրձին, հո անտարակի թերթի վրա լրագիր չի՞ լինի։

— Ա՛յ, ախմախ, եմ հա...

— Ճիշտ է, ախմախ ես, — հաստատեց Վազգենը։

Ուրիշ անգամ՝ նայխի խոսքի համար՝ Սեթոն նրա կողերը կջարդեր, բայց հիմա, ձախ փորն առաջ դրեց, կանգնեց, գլուխն ուսերի մեջ քաշեց, ձեռքը դրեց ճակատին լավ մտածում էր։

— Դե՛ լավ, գնանք ընկեր, ընկեր խմբագիր, — ծաղրեց Վազգենը։

— Գնա՛նք, հը, ինչպե՞ս չէ, — սթափվեց Սեթոն, — լա՛վ ճարը գտա, դու եսանց եաց, հիմա ամեն բան կբերեմ, — ասաց նա ու բամբ նման սլացավ։

Վազգենը մնաց մենակ. բավական երկար ժամանակ սպասում էր, Սեթոն չկար։ Համբերությունը հատավ. նա դուրս չեկավ լավ միջանցքի մթության մեջ տեսավ, որ Սեթոն ուսուցչանոցի դռան մոտ չարչարվում է։




Ամեն մեկն ուզում էր կարդալ, իմանալ, թե ինչ է գրված

— Ա՛յ տղա, էդ ի՞նչ ես անում, կողպեքը կոտրո՞ւմ ե՞ս, գժվել ե՞ս, նրա փեշից քաշեց Վազգենը։

— Կորի գնա ինկույն։

— Կպատժե՞ն, դո՛ւրս կանեն։

— Առանց էն էլ կպատժեն, լավ չե՞մ կտրողը. բա որ թուղթ է հարկավոր, ի՞նչ անեմ։

Դուռը մի կերպ բաց արին, ներս մտան։ Սեթոն փակեց հրազը։ Պահարանի դռան ապակու չտեղից չերեվացին խողովակաձեվ փաթաթած մեծ ու հաստ թղթերը։ Իսկույն պահարանն էլ բացվեց Սեթոյի ճարպիկ լավ ուժեղ մատների տակ։ Գտան լավ ներկեր, լավ ամեն ինչ, ու դռները կրկին կողպելով չեր դարձան դասարան։

Ցերկու խմբագիրները նստած են իրար դիմաց։

— Սկսենք, — հանդիսավոր կերպով ասաց Սեթոն։

— Սկսենք, — կրկնեց Վազգենը, բա անունն ի՞նչ դնենք։

— «Աշակերտի ձայն» — Աշտարակի մանկատան պատի լրագիրն էդպես էր։

— Չե՛, «Մանկատան ձայն», Ցերեվանի մանկատան մեր լրագրի անունն է։

— Իսկի չել չէ, վոչ ես, վոչ էն. նոր անուն դնենք — «Կոմունայի ձայն», — առաջարկեց Սեթոն։

— Կեցցե՛ս, հիանալի չէ, լես համաձայն եմ, — ասաց Վազգենը։

— Դե՛, լես նկարեմ լրագրի ճակատն ու անունը, դու չել առաջնորդողը գրիր — լա՞վ։

— Շա՛տ լավ, — ասաց Սեթոն ու գրեց — «Մեր առնելիքները», ապա գրպանից հանեց «Ավանգարդ», «Խորհ. Հայաստան» ու սկսեց գրել։ Մեկ այս թերթեն էր նայում, մեկ այն, ու իրենից նախադասություններ կազմում։ Լուռ էր դասարանում, միայն խմբագիրների ուժեղ շնչառությունն էր լսվում։

Սեթոն վերջացրեց հոդվածը, այժմ «Դպրոցական կյանք» բաժինն էր գրում. իսկ Վազգենը նկարելը վերջացրել էր ու ինչ որ խազմզում էր։

— Էդ ի՞նչ ես անում, Վազգեն, — հարցրեց Սեթոն։

— Է՛... վոչինչ, — ամաչելով թուղթը ծածկեց Վազգենը։

— Տեսնենք, մի տեսնենք։ Օհո՛, վոտանավոր ես գրել, — թուղթը խլեց լավ սկսեց կարդալ Վազգենի գրած վոտանավորը։

Դարունն է չեկել,
Ի՜նչ սիրուն է նա։
Դուրս պիտի վազել,
Ներսն ո՞վ դիմանա։

Կանաչի վրա
Վազենք, հեռանանք,
Թե վոր զանգն էլ տան,
Իսկի չիմանանք։

Վարիչը կանչի —
«Ներս չեկե՛ք, տղերք»,
— Դարուն է, գարուն,
Թողացե՛ք, տղերք։

3.

— Հիանալի չե՛ — ես էլ վոտանավոր։

Արշալույսի պայծառ շողերն արդեն փայլում էին սարերի չետեվից, երբ պատրաստ լրագիրը կպցրած էր սեղանատան պատին։

Սեղանատան դռան մոտ այնքան էին հավաքվել, այնպես էին խռնվել, վոր կատարյալ իրարանցում էր։ Ամեն մեկն ուզում էր կարդալ, իմանալ՝ ինչ է գրված. ամեն մեկն ուզում էր գիտենալ, թե ով է գրել, ով է կազմակերպողն ու խմբագրողը։

Իսկ խմբագիրները հպարտ-հպարտ քայլում էին ու դիտում բոլորին։ Նրանք աչքով, — հոնքով հասկացրին Պողոսին (վորովհետեվ նա միայն գիտեր գաղտնիքը), վոր վոչինչ չասի։ Բայց Պողոսը չհամբերեց լավ ասաց մի քանիսին, վոր ես մի գիշերվա մեջ խմբագրել են Սեթոն ու Վազգենը։

— Գտնվեցին, գտնվեցի՜ն, խմբագիրները գտնըվեցին։

Ճիչ ու իրարանցում բարձրացավ. բոլորը շրջապատեցին ձեռներեց ու շնորհալի խմբագիրներին։

Վարիչ ընկ. Խորենն էլ վրա հասավ. հասկացավ բանի էությունը, շատ ուրախացավ, նույն իսկ զգացվեց։

Բիչ հետո զանգը տվեցին, բոլորը կանոնավոր շարքերով սեղանատուն մտան։ Բոլորի հետաքրքրության առարկան, բոլորի խոսակցության նյութը պա-

տի լրագիրն էր։ Լուրը տարածվեց յեվ մանկատան ծառայողների մեջ. յեվ դպրոցի վարիչը՝ ծանրամարմին ու «լուրջ» ընկ. Ստեփանը, իր մանր, բայց խոհուն աչքերը պլպլացնելով, առանց այն էլ բարի դեմքին ուրախ ու զվարթ կերպարանք տված, մտավ սեղանատունը։

Բոլորը լռեցին յեվ սուր ու սպասողական հայացքով դիտում ու սպասում էին, թե ի՞նչ է ասելու վարիչը։

— Իմ սիրելիք, յես իմացա, վոր դուք արդեն պատի լրագիր ունեք։ Թեյեվ դեռ չեմ կարդացել, թեյեվ դեռ չգիտեմ, թե ինչ եք գրել ձեր լրագրում, բայց պատի լրագրի գոյությունն արդեն ապացույց է, վոր ձեր մեջ ձգտում կա դեպի հասարակական կյանքը, վոր դուք սկսում եք...

Նա մոտեցավ լրագրին.

— Սկսում եք. .սկսում եք...նա հանկարծ լռեց։

Ուշադիր նայեց լրագրի թղթին, շուռ տվեց. նայեց մյուս կողմին. նրա դեմքի արտահայտությունը փոխվեց. բոլորը վախեցան ու մի տեսակ քարացան։

— Ո՞վ է գրել այս լրագիրը,— հնչեց վարիչի արդեն սուր ու այլայլված ձայնը։ Սեթոն նայեց իր դեմ նստած Վազգենին ու Պողոսին, գունատվեց, յեվ կանգնելով, վճռական ու հաստատուն կերպով ասաց.

— Յես, ընկ. Ստեփան։

Վարիչն այդպես շուտ պատասխանի չէր սպասում։ Նա շփոթվեց. չգիտեր ինչ ասի. բոլորն էլ տարտամ դրության մեջ ընկան։

— Վո՞րտեղից քեզ այս թուղթը։

Վարիչն աչքերը հառեց սանի յերեսին։ Սեթոն մռայլվեց, բայց շունչն իրեն հավաքեց յեվ կրկին հաստատուն ձայնով ասաց.

— Ուսուցչանոցից, գիշերն եմ վերցրել։

Բոլորը սարսափեցին, իսկ վարիչը ճչաց.

— Դո՛ւրս եստեղից։ Գնա՛ ննջարան։

4.

Մթագնած աչքերով դուրս յեկավ Սեթոն ու օրորվելով գնաց ննջարան, ներս մտավ, նստեց իր մահճակալի վրա ու սկսեց մտածել։

Նա չէր զգում ժամանակն ու իր շուրջն յեղող լռությունը, յեվ սթափվեց՝ յերբ ներս մտան Պողոսն ու Վազգենը։ Նրանց յետեվից յեկան Ֆոսիկը, Տիգուշն ու Կոստին յեվ ելի մի հինգ-վեց հոգի։

Նրանք շրջապատեցին Սեթոյին յեվ խոսք չէին գտնում մի բան ասելու։ Դուռը շրխկալով բացվեց յեվ ներս մտան ընկ. Խորենն ու դպրոցի վարիչը։

— Յես պատվիրեցի, վոր միայն Սեթոն գա եստեղ, դո՞ւք ի՞նչ գործ ունեք,— բարկացած ասաց վարիչը։

— Վոչ, ընկ. Ստեփան, սա ավելի լավ է, թող իր ընկերներն էլ մասնակցեն այս բանին, թող նրանք էլ դատեն իրենց ընկերոջը,— ասաց ընկ. Խորենը։

— Շատ լա՛վ, յես համաձայն եմ, թող մնան։

— Այսպես, սիրելիք, դուք արդեն գիտեք, վոր պատի լրագրի թուղթը Սեթոն գիշերը գողացել է ուսուցչանոցից։ Այսպիսի վրդովեցուցիչ, այսպիսի վատ դեպք մեր դպրոցում դեռ չէր պատահած. այսպիսի անպիտան արարքի համար պետք է նրան իսկույն ուղարկել Յերեվան՝— ուղղիչ գաղութ—թո՛ղ այնտեղ աչքը հանեն ու իրեն հանցագործ պահեն։

Տղաները լուռ, քարացած կանգնած էին։ Սպասողական դրություն էր։

— Հ՞ը, դե մի բան ասացե՛ք, հո չե՞ք խաղում. դուք էլ ձեր կարծիքը հայտնեցեք։

Հանկարծ մեկն անսպասելի, բարձր ու անբնական ձայնով աղաղակեց.

— Վո՛չ։

Դա Պողոսն էր։

— Ինչպե՞ս թե վոչ. ուրեմն նրան այդ հանցանքի համար չպատժե՞նք։

— Վո՛չ, չպետք է պատժենք. նա մեղավոր չէ,—ասաց կարմրատակած Պողոսը,— նրան թուղթը պետք էր պատի լրագրի համար։

— Ուրեմն վորովհետեվ նա պատի լրագրի համար է թուղթ գողացել, հանցանք չէ՞,—լա՛վ է, վաղը մյուս որն էլ մի տուն կթալանի, էլի հանցանք չէր համարի, հա՞։

— Է, դե չէ՛, է՛. ընկ. Ստեփան, էդպես չէ։ Ա՛յ, Սեթոն էս մեկ ու կես տարի յա մեզ հետ է, նա յերբեք վոչ մի գողություն ու վատ բան չի արել. ճիշտ է, նա կռվող է, խաղալ շատ է սիրում, կատակներ է անում, բայց նա գողություն չի արել։ Յեթե նրան գաղութ ուղարկեք կամ դո՛ւրս անեք, նա էլի առաջվա խուժանը կդառնա. նա թուղթը վատ նպատակով չի գողացել. ներեցեք նրան, ընկ. Ստեփան։

Պողոսն այս բոլորն ասաց մի շնչով, կարմրեց ճակնդեղի նման ու լռեց։

— Հ՛ը, տղերք, դո՞ւք էլ նույն կարծիքին եք,— խոսեց վարիչն արդեն մեղմացած ձայնով։

-- Այո՛, այո՛, ներեցեք նրան. ընկ. Ստեփան... ներեցե՛ք, նա շատ լավ տղա յա։

Վարիչը մտազբաղ, էր հատ-հատ բաժ բեխերն էր կրծում ու տատանվում։ Յերկար տեվեց նրա լռությունը, վորով կարծես ուզում էր փորձել յերեխաների համբերությունը։

Ապա նա բոլորովին հանգիստ ձայնով շուռ յեկավ դեպի Սեթոն.

— Ինձ համար սա մի նոր ուրախություն է, վոր ընկերներդ այդպես սիրում են քեզ յեվ այդպես միահամուռ միջամտում են քեզ ներելու համար։ Բայց ասա՛ ինձ, ինքդ քեզ մեղավոր համարո՞ւմ ես, ինքդ զգո՞ւմ ես քո հանցանքը։

Սեթոյի միտքը կարծես պարզվեց ու նա կմկմաց.

— Ներեցե՛ք, ընկ. վարիչ, յես մեղավոր եմ, բայց անկեղծ եմ ասում—ստիպված էի անել։

— Դա արդեն ջոկ բան է։ Այժմ, յերբ հանցավորն էլ խոստովանում է իր մեղքը, այժմ արդեն պետք է գտնել մի էնպիսի պատիժ, վորը խոր հետք թողնի Սեթոյի սրտում յեվ նա յերբեք այսպիսի բան չկրկնի։ Ապա, դուք առաջարկեցե՛ք, տեսնե՛մ,—ասաց ընկ. Ստեփանը։

— Յես, ասեմ, խոսեց բարի ընկ. Խորենը։ Քանի վոր այժմ մենք պատի թերթ ունենք։ ապա մանկատան սաների յեվ մանկ. խորհրդի կողմից թերթում հանդիմանություն գրենք նրան։

— Շա՛տ լավ է, շա՛տ լավ է,— աղաղակեցին բոլորը։

Քիչ հետո տղաները շրջապատել էին Սեթոյին ու Վազգենին, յեվ նրանք ուրախ-ուրախ պատմում էին — թե ինչպես ձեռք բերին թուղթն ու ներկերը, ինչպես լուսացրին ամբողջ գիշերը։

---

Արեվի դուրեկան ու քնքույշ ճառագայթները վոսկի ցնցուղների նման լցրել էին մանկատան միջանցքը։ Հնչեց զանգի ձայնը յեվ բոլորն ուրախ վազեցին դասարան։

ՍԻՄԱԿ



ԳՈՒՐԳԵ՛Ն ՄԱՀԱՐԻ

# ՊԵՏԻԿԻ ՅԵՐԱԶԸ

1.

Ես ի՞նչ ձեն է,
ես ի՞նչ աղմուկ,
տուր ու դմփոց
ամբողջ թաղում,
Գետառ Ձա՞յը
նորից յելավ,
վորպես հորձանք,
վորպես սելավ,
թե՞ ամպերն են
գետնին իջել
ու թամբել են
հրե ձիեր,
ու թափում են
կայծակ, կարկուտ.
Ես ի՞նչ ձեն է,
ես ի՞նչ աղմուկ։

2.

Ռումբ ու սվին,
թուր, թնդանոթ,
դիրք ու փոշի,
գազ, գազանոթ,
գնդակները
վոնց վոր բզեզ,
վառքի կոխան
ծաղիկ ու սեզ,
բո՛ւմ—բո՛ւմ,
բո՛ւմ—բո՛ւմ,
վողջ յերկիրը
վոնց վոր մի տուն,
կրակ առած
բզեզի բուն,—
ես ի՞նչ ծյուն եր
յերկրի գլխին,
թոփի բերան
առնել խալխի՞ն..։

3.

Յելավ Պետիկն,
քիթը ծռեց,
մտիկ-մտիկ,
մի քիչ լռեց,
հետո ասավ,—
«Ի՞նչ եմ սառել,
պատերա՛զմ է,
ծա՛նր յերազ,
պատերա՛զմ է,
ա՛յ, պատերազմ...։
Պատերազմ է,
ու յես դեռ տա՞ն,
հազար բազե,
այերոպլան,
գնդացիրը
վո՛նց է յերգում,
մեր բանակը
իրա դիրքում,
Կոմսոմոլիա,
Պիոներիա,
ջուր հասցնող
Հոկտեմբերիկ,
մեր յերկրից դուրս՝
դաշտի բերնին՝
խաբված զորքը
Չեմբերլենի...։

4.

Թռավ Պետին
վոնց վոր նժույգ,
ու թանձրացած
ծխի մուժում,
քայլեց առաջ,
կրկի՜ն-կրկին,—
ու՝ թշնամի,
զորքի գլխին.
—Ե՜յ, ընկերներ,—
ասավ Պետին,—
ի՞նչ եք ուզում
դուք մեր յերկրից,
ուր տիրում է
կամքը արի,
ԽՍՀՄ
բանվորների,
Դուք եք, գիտեմ,
բանվոր, հողվոր,



աշխատանքի,
բաղցի սովոր,
ո՞ւր եք իջել,
արյան դաշտեր,
կռվի հանել
անզին վաշտեր.
մենք էլ ձեզ պես
յերեկ՝ գերի,
եսոր՝ կանգնած
տեր յերկրի,
ո՞ւմ վրա յեք
կրակ բացում,
ձեր բանվորի
ու գյուղացո՞ւ...
մեր թշնամին
մեկ է ու մեկ,
լինի Ինգլիզ,
ռուս թե նեմեց,
ով ուտում է
մեր քրտինքը,
տանը հանգիստ
վարդին. ինքը.
պլոկում է
ինչ վոր հասնի,
վերջն էլ բշում
պատերազմի...
մեր թշնամին
ո՞ւր է շնթռել,
իսկ դուք եք ի՞նչ
գիրք եք ընտրել,
գնանք դեպի
ձեր յերկիրը,
ձեզ հետ Կարմիր
մեր բանակը,
մահ տանք եղ նենգ
բուրժույներին,
ու տեր կանգնենք
մեր աշխարհին»...։

5.

Ու տեսնում է
Պետին անթարթ,
վողջ բանակը,
վո՛նց վոր մի մարդ,
զազ, հակազազ
դեն շպրտեց
— Եհե՜յ, — ասաց, —
խաբվել ենք մենք.
ընկերներ են
չին
ու
հնդիկ,
ֆարս
ու
արաբ,
ճապոն,
տաճիկ,
անգլիացի,
ֆրանսիացի,
գերմանացի,
հույն, հրեա,
ռուս, վրացի,
բանվոր հայը
ու գյուղացի.
յեղբայրներ են
ով վոր՝ **աշխատ**,
իսկ ով ազրուկ
ու **անաշխատ**,
ով մաշկում է
մեր սև մորթը,
լինի Լորդը,
լինի Ֆորդը, —
նրանք են մեր
վոսոխները,
հերիք լինենք
նրանց ճորտը...
Եհե՜յ, — ասին, —
նրանք մեկտեղ,
խաբվել ենք մենք,
խաբվել ենք մենք...։

Գնանք դեպի
մեր յերկիրը
մեզ հետ Կարմիր
քաջ բանակը,
մահ տանք եղ նենգ
բուրժույներին,
ու տեր կանգնենք
մեր աշխարհին։

6.

Ու տեսնում է
Պետին արթուն,
զորքը յերգով
յետ է գնում,
անհաշիվ եր
իր բանակը,
հետն էլ Կարմիր
մեր բանակը.
յետ են գնում
Բալտիկ ծովով,
Կարպատ սարով,
յերկաթուղով,
ոդանավով,
ձիյով, վոտով,
իրար մոտով,
յետ են գնում,
յերգում արի,
յերգը վերջին
մեր պայքարի...

. . . . .

. . . . .

. . . . .

7.

Զարթնեց Պետին՝
ճակտին — քրտինք,
սրտում — խնդում
ու խնդություն,
յերկիրը վողջ
հանգիստ, խաղաղ,
քաղաքում մուրճ,
դաշտում մանգաղ,
որը արև,
գալիքը վառ,
դաշտեր, սարեր
ջինջ ու պայծառ,
կեցցե կամքը
վեհ ու արի,
ԽՍՀՄ
բանվորների։

### ՎԵՐՋԱԲԱՆ

Եղաց լինե
կռիվ լինի,
կանգնի մեր դեմ
աշխարհը հին,
հազար Իվան,
հազար Պետի
ռումբով, խոսքով
գիրք կը մտնեն,
յերկիրը մեր
կը պաշտպանեն.
— Եյ, ընկերներ,
կասեն նրանք, —
ի՞նչ եք մտել
գիրք ու խրամ,
մահու գիմաց,
մահու բերան,
ձեր տները
թողած վերան,
ո՞ւր եք իջել
արյան դաշտեր.
կռվի հանել
անգլին փաշտեր,
մենք էլ ձեզ պես
յերեկ գերի,
էսոր կանգնել
տեր յերկրի,
ո՞ւմ վրա յեք կրակ բացում,
ձեր բանվորի
ու գյուղացո՞ւ,
իրար թողի
ըմպան մենք տանք,
իսկ թշնամին
ենտեղ խնդա՞.—
գնանք դեպի
մեր թշնամին,
մեր փրկության
այս վեհ ժամին,
գնանք դեպի
ձեր յերկիրը,
մեզ հետ Կարմիր
մեր բանակը,
մահ տանք եկ նենգ
բուրժույներին,
ու տեր կանգնենք
մեր աշխարհին...»



## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

# ՀՈՒՇԵՐ

Իմ նանը հիվանդ էր ու ծեր,
Աչքերը՝ ներս ընկած ու սև.
Չէր տեսնում։
Փուլպայից այն կողմ մի մթին
Աշխարհ էր, այնքան մոտ իմ տատիս
սրտին։

Նա սիրում էր յերգեր հորինել,
Յերգեր՝ վոր այնպես քնքույշ էն հնչում.
Ու գլուխս առած իր գրկումը ծեր,
Պատմում էր անցյալն ու սև սև հուշեր։

Յես լսում եյի յերգերը նանիս,
Մեր հինավուրց թոնրի կողքը նստած,
Կատուն էլ հանգիստ նստում էր կողքիս,
Կարծես ակնապիշ լսում էր նրան։

Իմ նանը հիվանդ էր ու ծեր
Աչքերը ներս ընկած ու սև.
Պատմում էր՝
Թե ինչպես իմ հայրը բանվոր
Տերերի կռվում զոհ գնաց անդարձ։

Յես լսում եյի յերգերը նանիս,
Մեր հինավուրց թոնրի կողքը նստած,
Կատուն էլ հանգիստ նստում էր կողքիս,
Կարծես ակնապիշ լսում էն նրան։

մանկատան սան՝ Յեղիսե Պետրոսյան
(14 տարեկան)




**Այս դեպքը պայծառ օրինակներից մեկն է այն հերոսության, վոր ցույց են տվել կոմունիստ-մարտիկները քաղաքացիական կռիվներում:**

**Ընկ. Կատովսկին Կարմիր բանակի հրամանատարներից մեկն է, վոր իր՝ «Կատովսկու Բրիգադայով» հերոսության հրաշքներ է գործել:**

Կատովսկու ամենազարմանալի սխրագործություններից մեկը, դա Անտոնովի բանդաների*) ոչնչացումն է, Տամբովի նահանգում, 1921 թվին:

Յերկար ու համառ պայքար եր: Յերեք ու կես ամսվա ընթացքում Կատովսկու բրիգադան 150-ից ավելի ընդհարումներ է ունեցել բանդիտների հետ: Անտոնովի գլխավոր ուժերը ոչնչացված եյին: Մնացել եյին միայն Վորոնեժ գետի ափագահում մանր բանդաներ: Սակայն դեռ կենում եր Անտոնովի ուժեղ գործակիցը՝ Մատյուխինը, վորն ուներ իր տրամադրության տակ 450 սուր, համարյա այնքան, ինչքան Կատովսկին: Մատյուխինի բանդան ոչնչացնել չեր հաջողվում:

Կատովսկին վորոշեց խորամանկության դիմել: Բանդիտական միլիցիայի միջոցով, վորի գլուխն եր կանգնած Մատյուխինի յեղբայր Միխայիլը, Կատովսկին կապ է հաստատում Մատյուխինի բանդայի հետ:

Կատովսկին Միխայիլ Մատյուխինի հետ տեսակցություն է սարքում անտառում, ներկայացնելով իրեն վորպես Կուբանո-Դոնյան ապստամբ խմբերի հրամանատար՝ գեներալական ավագ Ֆրոլով:

Մատյուխինը Կատովսկուն նամակ է գրում և ցանկություն հայտնում տեսակցել ատաման Ֆրոլովի հետ:

Յերկար չմտածելով, Կատովսկին թամբում է իր «Որլիկին» և յերկու ընկերների հետ գնում Մատյուխինի մոտ:

Գնում են... Հանկարծ մթության միջից յերևում է ձիավորների մի խումբ, 50 հոգուց բաղկացած: Այդ խումբն ուղեկցում է Կատովսկուն առաջ, և վերջապես նա մտնում է բանդիտների հրամանատարական կոմին: Առողջ, ուժեղ մի տղամարդ, համառ հայացքով դիմավորում է Կատովսկուն:

Դա Մատյուխինն եր:

Կատովսկին ուղղակի մոտենում է Մատյուխինին, պինդ սեղմում է նրա ձեռքը և ակնարկում՝ վոր իրենք ժամանակ են կորցնում դատարկ խոսակցություններով: Մատյուխինը նայում է Կատովսկու աչքերին և ագահությամբ, ինչպես բոլորը, լսում է նրա խոսքերը:

Կատովսկին վճռական կերպով դառնում է ձին և հրավիրում է բոլորին հետևել իրեն:

— Յերեքով դեպի աջ, քայլով մարշ:

Առաջից գնում են յերեք հոգի, կենտրոնում Կատովսկին է, նրանից ձախ՝ Մատյուխինը: Կատովսկու կողքից կախված է մաուզերը, իսկ աջ գրպանում նագանն է պատրաստ կրակելու համար:

Բանդան ձգվում է դեպի գյուղ, դեպի այն մասը գյուղի, վորը փռված է անտառի մեջ:

Կատովսկու ձիավորները դասավորված են այնպես, վոր հարմար ժամանակին կարելի լինի ոչնչացնել Մատյուխինի ամբողջ բանդային: Նախքան այդ, պետք կայանա «գնդապետ Ֆրոլովի» և Մատյուխինի շտաբների միացյալ նիստը:

Նիստը գումարել են խրճիթում:

Խրճիթում քեֆ է: Ողին, յուղալի շչին, վոչխարի միսը, տապակած հավերը ծանրացրել են սեղանը: Մեծ խրճիթում 20 մատյուխինցի և 8 կատովցիներ կան: Նախագահում է Հարրինը, Կատովսկու ընկերներից մեկը, վորն այժմ աշխատում է Կոմինտերնում:

Նավթի ճրագը վառվում է սեղանի վրա դեղին կրակով: Ժամանակն անցնում է տաք խոսակցությամբ և բանդիտական «լոզունգների» հավատարիմ մնալու բացականչություններով: Կատովցիները վորոշել են՝ հարմար րոպեյին գնդակահարել Մատյուխինին և նրա ընկերակիցներին: Կատովսկին կարգադրել է յուրայիններին.

—Մինչև յես չպահանջեմ այդ սրիկա Մ—Մատյուխինին, վոչ-վոք չհամարձակվի կրակել—Կատովսկին կակազում եր:

*) Բանդա—ավազակային խումբ:

Նստում, ողուց այրված կոկորդներով, տաք ճառեր են արտասանում։

Մատյուխինը խփում է բռունցքը սեղանին։

— Էհ, ցավալի չէ, յեղբայրներ, վոր Մախնոյի*) ներկայացուցիչն այստեղ չի։

Դրան Կատովսկին համարձակ պատասխանում է.

— Հ—հիմար... սա նրա ադյուտանտն է,— և մատնացույց է անում Հարրիին։

Յեվ Հարրին սկսում է վոգեվորված ասել այն մասին, վոր ինքը հավատով ու ճշմարտությամբ ծառայել է Մախնոյին, վոր նրանք շատ կարմիր «շներին» յեն վոչնչացրել։

Այն ժամանակ, յերբ տապակած մսի ափսեները նորից ծածկում են սեղանը, Հարրիին դուրս են կանչում։ Բակից դուրս է գալիս, վոր գոմում կատովցիներից մեկի բերանից խոսք էր դուրս պրծել։

Յեվ այդ ժամանակ գոմում յեղած բանդիտներին կատովցիները խեղդում են և խոտի մեջ թաղում։ Սակայն ճիչեր են լսվել։ Վտանգավոր րոպե է։

Հարրին հաղորդում է Կատովսկուն կատարվածի մասին։

— Մատյուխինից հետո խ-խոսք կ-կտաս ինձ, — ասում է Կատովսկին։

Այդ ժամանակ Մատյուխինը ձեռքը խփում է սեղանին ու գոռում, թե պետք վոչնչացնել «արյունարբու կոմմունային»։ Բանդիտները շնչահատուր լսում են նրան։ Մատյուխինը հետո բղավում է, վոր այսօր և իսկ կհարձակվի կարմիրների վրա։

Վերջին խոսքը տրվում է ատաման Գրիգորի Իվանովիչ Ֆրոլովին։

Վոտքի յե կանգնում Կատովսկին և նրա հետ իր հրամանատարներն ու կոմիսարները։ Վոտքի յեն կանգնում և բանդիտները։ Բոլորի ձեռքերը ատրճանակների և սրերի կոթերի վրա յեն։ Կատովսկին գրպանից հանած ատրճանակով ծեծում է սեղանը և հանկարծ նագանի փողն ուղղում է Մատյուխինի վրա...

— Վերջ կոմեդիային*)... Յես Ֆրոլովը չեմ... Յես... Կ-Կատովսկին եմ...

Մատյուխինը սարսափից ցած է գցում գլուխը և յերկու ձեռքով ծածկում գունատված դեմքը։

Կատովսկին քաշում է շնիկը, ատրճանակը չի կրակվում, յերկրորդ անգամ՝ դարձյալ, յերրորդը՝ նույնը։ Կատովսկին մի կողմ է թռչում և պատի տակ սկսում է դուրս հանել մաուզերը։

Խրճիթում քարացել են սարսափից։ Հարրին հանգցնում է ճրագը։ Խրճիթում սկսվում է անկարգ կրակոց, վորից փշրվում է ապակիները։ Ճիչեր ու տնքոցներ։ Բանդիտներից մեկն ան-



— Վերջ կոմեդիային, յես Կ-Կատովսկին եմ։

ցնում է սեղանի տակը և հրացանն արձակելով վիրավորում է Կատովսկուն ուսից։ Չնայած ցավին, Կատովսկին չի կորցնում իրեն։ Մի րոպեյից հետո բանդիտները գնդակահարված են։

Խրճիթի կրակոցն ազդանշան յեղավ դրսում, գյուղի շուրջը գտնվող կատովցիների համար։ Մեկ ժամից հետո Մատյուխինի բանդան վոչնչացված էր։

Յերբ ամեն ինչ հանգստացավ, յեկան Կատովսկու վերքը կապելու, վորից նա հազիվ էր վոտի վրա մնում, նա՝ յերկարացնելով առողջ ձեռքը՝ հեռացրեց բժշկին ասելով.

— Առաջ Ն-Նիկիտինին — ցույց տալով վիրավոր ընկերոջը։

*) Մախնոն Ուկրայնայի ավազակ էր, վոր իր շուրջը հավաքելով կուլակ գյուղացիներին, ավազակային գործողություններ էր սկսել Խորհրդային իշխանության դեմ։ Մախնոյի բանդաները վոչնչացվեցին 1921 թվին, իսկ ինքը փախավ արտասահման։

*) Կոմեդիա—կատակերգություն. ուզում է ասել՝ վերջ կատակներին։



Արև Ջուր Նավթ Տորֆ

# Ի՞ՆՉ ՈՒԺԵՐ ԵՆ

## ԿԵՆԴԱՆԻ ՇԱՐԺԻՉԸ

Եղել է մի ժամանակ, երբ չի եղել ոչ մի շարժիչ ուժ, ոչ մի մեքենա, բացի կենդանի մարդ-մեքենայից։ Այդ մարդ-մեքենայի համար էլ նույնպես պետք է վառելիք, ինչպես և շոգեմեքենայի համար։

Մարդու համար կերակուրը նույն նշանակությունն ունի, ինչպես ածուխը մեքենաների համար։ Եթե աշխատում է մարդը՝ ավելի կերակուր է գործածում, կերակուրն այրվում է մարդու օրգանիզմում, տալով մկաններին տաքություն և ուժ։

Հին ժամանակ ոչ մի աշխատանքում, բացի մարդկային մկաններից՝ չէր ճանաչվում ոչ մի շարժիչ ուժ։

Մարդու աշխատանքը ոչ մի բան չարժեր։ Հազարավոր ստրուկներ՝ մահվան սպառնալիքի տակ՝ միշտ պատրաստ էին աշխատելու իրենց տերերի համար։

Մենք հիմա զարմանում ենք, թե ինչ կերպով հին եգիպտացիները կառուցում էին հսկայական քարե պիրամիդները՝ բուրգերը, այդ թագավորների գամբարանները։ Ի՞նչ հնարք էին գործադրում անագին ծանրության քարերը կրելու համար և ինչ հնարքով էին դրանք վերև բարձրացնում։

Այն ժամանակ ամեն ինչ արվում էր անթիվ-անհամար ստրուկների մկաններով և այն պարզ մեքենաների միջոցով, ինչպիսին են լծակը և ճախարակը։

Ծանրություններ կրելու համար հին ճարտարապետները գործածում էին ահագին սահնակներ, որոնց նմանը շինում են մեր երեխաները՝ սարից ցած սղղալու համար։ Սահնակները շինվում էին հաստ գերաններից։ Սահնակների տակ դրվում էին գլորաններ։ Հարյուրավոր ստրուկներ՝ ճիպոտի տակ՝ քաշում էին այդ սահնակները հաստ պարաններով։ Սահնակների հետևից հրում էին լծակներով։ Բեռը սահնակների վրա պահում էին ցցերով և թոկերով, որ նա ցած չընկներ։

Եգիպտական բուրգերը կառուցվում էին տասնյակ տարիների ընթացքում, շինվում էին քարհանքից ծանր քարեր կրելու համար հատուկ ճանապարհներ։

Ամենադժվարը ծանրություն բարձրացնելն էր։ Դրա համար հարկավոր էր առաջուց պատրաստել փոքրիկ բլրակներ, այդ բլրակների լանջերով քաշում էին բեռը, ու հետո այդ բլրակները վոչնչացվում էին։

Այն ժամանակվա աշխատանքների համար չէին խնայում ոչ մարդկանց և ոչ ժամանակ։ Եվ այդ միայն այն պատճառով, որ ստրուկի աշխատանքը չէր գնահատվում, այդ մի ձրի ուժ — էներգիա էր տերերի համար. միայն այդպիսի պայմաններում հնարավոր էին այդպիսի հսկայական կառուցումներ։

## ՁԻՆ ԿԱՄ ՄԱՏՈՌԸ

Եվ անա անցան դարեր։ Մարդիկ սովորեցին օգտվել կենդանիներից, սովորեցին լծել աշխատանքի եզան և ձիուն։

Միջնադարյան արհեստանոցում ձին անում էր այն, ինչ որ հիմա անում է շարժիչ մեքենան։ Ձին փակում է շրջանով, շարժում, պտույտ է տալիս գերանը. գերանն ուժ է հաղորդում գազգյահի տակի անիվներին։ Այդ աշխատանքը կատարելու համար մեծ տեղ էր հարկավոր ձիուն, վորպեսզի ուժ տար անիվներին։ Եվ ինչքա՜ն գործը դանդաղ էր առաջ գնում։

Բայց հիմա փոքրիկ, 3—5 ձիու ուժ ունեցող մատորը պտտեցնում է մի շարք գազգյահներ, և լծակի հասարակ շարժումով կարելի յէ նրանք բանեցնել, կարելի յէ կանգնեցնել ու շարժման արագությունը կանոնավորել։ Կա մատոր, վորի ուժը հավասարվում է ձիու $^{1}/_{16}$ ուժին, մատոր էլ կա՝ մի քանի հազար ձիու ուժանոց։

Սակայն ներկայումս էլ ձին կամ յեզը գարձյալ բանեցվում են վորպես շարժիչ՝ գյուղացու տնտեսության մեջ։ Եզն ու ձին քաշում են կալսող մեքենա, արոր, գութան և այլն։ Բայց հետզհետե ձիուն գործածությունից դուրս է քշում մեխանիկական ձին, ավելի զիմացկուն, ավելի ուժեղ և աշխատանքի համար ավելի հարմար։

Ինչպիսի՞ ձի յէ այդ։

Այդ ավտոն է, այդ շարժիչն է, այդ տրակտորն է։ Մի տրակտորը տասնյակ ձիերի բան է անում։ Տրակ-












# ԾԱՌԱՅՈՒՄ ՄԱՐԴՈՒՆ

*ուրը վարում հերկում է, տրակտորը բանեցնում է կալսող մեքենան, տրակտորը փայտ է սղոցում և ջուր է քաշում։*

*Յեվրոպական մայրաքաղաքների փողոցներում ձիու չես հանդիպի։ Նրան կատարելապես դուրս է քշել ավտոն։ Նյու-Յորքում, օրինակ, 4 բնակչին ընկնում է մի ավտո։*

*Յեվ միևնույն ժամանակ չինական Հոնգկոնգ քաղաքի փողոցներում ձիու փոխարեն մարդիկ են լծված. Նրանք բեռներ են փոխադրում, նրանք լծված թեթև չերկանիվանի սայլակներին՝ մարդ են տանում-բերում։ Չինաստանի բրնձի դաշտերում մինչև հիմա մարդն է աշխատում։ Մարդն է պտտում իր ուժով ջրհան անիվը՝ անցնելով աստիճանից աստիճան։ Անիվին կպցրած են շերեփներ, վորոնք ջուր են քաշում, ածում խողովակների մեջ և ջրում դաշտերը։*

## ՔԱՄԻՆ ԱՇԽԱՏՈՒՄ Է ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱՐ

*Մարդիկ վաղուց սովորել են օգտվել քամու ուժից։ Քամին քշում է առագաստավոր նավեր, շարժում է հողմաղացի թևերը։*

*Բայց հաստատուն չի քամու ուժը։ Շատ գործ է հարկավոր՝ մեկ էլ տեսար քամին կտրվեց։ Քմահաճ է, նազ ունի քամին, նազ է անում և շարժիչը։*

*Հույս չի կարելի դնել քամու շարժիչի վրա՝ թե նա միշտ կարող է աշխատել։*

*Յեվ քիչ քիչ, հետզհետե առագաստների տեղ շոգեշարժ մեքենաներ դրին նավերի վրա, հողմաղացների փոխարեն հիմնեցին շոգեաղացներ։ Այդպես հուսալի չէ։ Այս էլ կա, վոր քամու շարժիչների կարողությունը պակաս է։ Շենքը բարձր է, թևերը մեծ են, բայց առաջ բերած ուժը մեծ չի։*

*Նշանակում է իր ժամանակն անցկացրել, իր դերը վարել է քամու շարժիչը։*

*Դեռ վոչ։ Մարդը գտել է ավելի կատարելագործված ձևը, վորով կարելի յէ օգտագործել բնության ձրի ուժը։ Քամու շարժիչը դարձյալ մնում է կյանքի մեջ. Բայց այդ արդեն նախկին հողմաղացը չէ՝ թույլ, ուժասպառ, անճոռնի, այլ ուժեղ շարժիչ՝ շինված գիտության և տեխնիկայի վերջին խոսքի համաձայն։ Այդ շարժիչներն ավելի կատարյալ ձևով վերցնում են քամու ուժն ու էներգիան, և այդ էներգիան միանգամից չի դրվում գործի մեջ, այլ առաջ դառնում է էլեկտրական հոսանք, վորը վազում է թելերի միջով և կատարում է հարկավոր աշխատանքը մինչև անգամ այն ժամանակ, յերբ քամի չի լինում։*

*Քամու էլեկտրոկայանները ձեռնտու յեն կառուցել բաց տեղերում, վորտեղ քամիներն անընդհատ փչում են, վորտեղ քիչ վառելիք կա շոգեշարժիչների համար, կամ թե հնար չկա օգտագործելու ջրի էներգիան։*

## ԹԱՓՎՈՂ ՋՐԻ ՈՒԺԸ

*Միանգամից չէ, վոր մարդիկ սովորել են թափվող ջրի ուժն օգտագործել։ Մարդն ամենից առաջ շարժման մեջ է դրել մեծ աստիճանավոր փայտե անիվներ։ Իսկ հետո հնարել են թափվող ջրի ուժով շարժիչ անիվները։*

*Ջուրը վերևից թափվում է անիվների վրա, սեղմում է դրանք և պտույտ տալիս։ Ինչքան ջուրը շատ է թափվում, ինչքան նա արագ է հոսում, ինչքան բարձրից է նետվում, այնքան էլ արագ և մեծ թափով է շարժվում անիվը։*

*Մեզանից ամեն մեկը տեսել է, թե ինչպես են բանում ջրաղացները գյուղերում։*

*Զարմանալի լավ է օգտագործվում ջրի ուժը՝ այսպես ասած՝ տուրբինների միջոցով։*

*Ի՞նչ են տուրբինները։ Նրանք իրենց ձևերը փոխած ջրի անիվներ են այն տարբերությամբ, վոր ավելի բարդ կազմություն ունեն։*

*Այդպիսի տուրբինները դնում են հիդրո-էլեկտրակայաններում (ջրով բանող էլեկտրակայաններում)։ Նրանք հսկայական կարողություն ունեն, նրանց ուժը հավասարվում է մի քանի տասնյակ հազար ձիու ուժի։ Օրինակ. Ամերիկայում՝ Նիագարա ջրվեժի տակ դրված են 70 հազար ձիու ուժ ունեցող տուրբիններ։*

*Մեր Վոլխովյան կայանը (Լենինգրադի մոտ) վորն արդեն աշխատում է, 80 հազար ձիու ուժ ունի։*



Ձ Ա Գ Է Ս

Իսկ Դնեպր գետի հիդրո-էլեկտրակայանը պիտի ունենա 6 հարյուր հազար ձիու ուժ։ Լոռվա Զորագեսըն ունենալու յե 30 հազար ձիու ուժ։

## ՎԱՌԵԼԻՔԻ ԵՆԵՐԳԻԱՆ

Ամեն տեսակ վառելիք պարունակում ե իր մեջ ահագին եներգիա։ Բավական ե այրել վառելիքը, և մենք կստանանք տաքություն—տաքության եներգիա։ Ածուխը վառվում ե կաթսայի տակ։ Ածխից ստացած տաքությունը տաքացնում ե ջուրը, առաջ բերում շոգի. շոգին սեղմում ե մխոց և շարժում ե վիթխարի մեքենան։

Մի կիլոգրամ քարածուխը կարող ե այնպիսի աշխատանք կատարել, վորպիսի աշխատանքի համար մի մարդը պետք ե գործադրեր 100 բանվորական ժամ, այն էլ անընդհատ աշխատելով։

Ամեն մի յերկրում վառելիքի պաշարը սահմանափակ ե։ Արդյունագործության համար առանձին նշանակություն ունեն նավթը և քարածուխը։ Այդ վառելանյութերը ձեռք բերելու համար իզուր չե, վոր իրար մեջ են կռվում կապիտալիստական պետությունները։

Նավթը և քարածուխը վառվելիս ամենամեծ տաքությունն են տալիս, քան թե ուրիշ տեսակ վառելանյութերը։ Չարժե անարժեք վառելանյութ, որինակ, տորֆը, փայտը, կամ վատ տեսակի քարածուխը բերել ֆաբրիկաների և գործարանների համար հեռու տեղերից։ Ձեռնտու չի այդպիսի վառելանյութերով ծանրաբեռնել յերկաթուղիները, տեղափոխության համար վառելիք բանեցնել։ Ավելի ձեռնտու յե այդպիսի վառելանյութն այրել հենց էլեկտրակայաններում և հենց տեղին այն դարձնել էլեկտրական եներգիա։

## ԱՐԵԳԱԿԻ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԻ ԵՆԵՐԳԻԱՆ

Արեգակի եներգիայի քանակը, վոր ստանում ե յերկիրը՝ ահագին ե։ 100 քառակուսի սաժենանոց հողամասի վրա արևի 45 աստիճան բարձրությունից այնպիսի արեգակնային տաքության եներգիա յե թափվում, վորը, յեթե մեխանիկական եներգիայի վերածվեր, կհավասարվեր 550 ձիու ուժի։

Ուրեմն ինչ հսկայական քանակությամբ եներգիա յե թափվում յերկրի ամբողջ մակերեվույթի վրա։ Պետք ե ասել և այն, վոր յերկրի վրա թափվում ե ընդամենը մեկ 10 միլիարդերորդ մասն արեգակի տաքության, մնացած մասը ցրվում, տարածվում ե տիեզերքի ընդարձակության մեջ։

Հաշվել են, վոր յերկիրն ստանում ե արեգակից միայն մի րոպեյում տաքության եներգիա $\frac{1}{2}$ միլիոն անգամ ավելի, քան այդ կարելի յեր ստանալ մի տարվա մեջ ամբողջ աշխարհում հանված քարածուխը վառելուց հետո։ Իսկ հանված քարածուխի քանակը հասնում ե $1\frac{1}{2}$ միլիարդ տոննի։ Տոննը 61 փթից քիչ ավելի յե։

Ո՞ւր ե գնում այդ հսկայական եներգիան, վոր յերկիրն ստանում ե արևից։

Եներգիայի մի մասը կլանում են բույսերը և պահում իրենց մեջ պաշարի համար։ Շատ եներգիա յե ծախսվում օդը, յերկիրը տաքացնելու, ձյուները և սառույցները հալեցնելու և ջրերը գոլորշիացնելու վրա։ Մեծ մասն էլ այնպես անօգուտ կորչում ե։

Ածուխը, նավթը, փայտը, տորֆը՝ այդ բոլորն արեգակնային եներգիայի պատրաստի պաշար են։

Քամու ուժը նույնպես արևի ճառագայթի ուժն ե։ Արևը տաքացնում ե յերկիրը, տաքանում ե և գետ-

նի վրայի օդը։ Տաքացած օդը ձգտում է դեպի վեր, իսկ նրա տեղ հոսում է ցուրտ օդը։ Կազմվում են օդային հոսանքներ. Այդ հոսանքներն կոչվում են քամի։ Օդի հոսանքը՝ հանդիպելով իր ճանապարհին առագաստների կամ հողմաղացի թևերի, գործ է կատարում։ Այսպիսով տեսնում ենք, վոր քամու էներգիան ծագում արևից։

Հոսող գետը և ջրվեժն իրենց ծագման համար նույնպես պարտական են արևին։ Արևը տաքացնում է ծովը և գոլորշիացնում ջուրը։

Ովկիանոսի ջրային անապատն իրենից ներկայացնում է մի տեսակ շոգու կաթսա։ Շոգին շատ վեր է բարձրանում, խառնում է և ամպեր կազմում։ Ջուրը նորից թափվում է յերկրի վրա անձրևի, կարկուտի և ձյան ձևով։

Արևի ազդեցության տակ ջուրը շրջանառություններ է կատարում։ Նա գոլորշու ձևով վեր է բարձրանում, սառչում և կրկին թափվում է յերկրի վրա։

Յենթադրենք վոր մենք կկարողանայինք օգտագործել արևի էներգիան անմիջապես, հենց ուղղակի արևից. սովորած լինեյինք հիմնել այնպիսի կատարելագործված արեգակնային շարժիչներ, վորոնք աշխատեյին ուղղակի արևի ճառագայթների ուժով, այն ժամանակ էլ կարիք չեր լինի ածուխ այրել շոգեշարժ մեքենաների համար։ Բոլոր ֆաբրիկաները, բոլոր գործարանները շարժման մեջ կդրվեյին արևի կողմից։

Դրա համար, վորպեսզի արևը փոխարինի յերկրի վրա յեղած բոլոր շարժիչներին, բավական կլիներ լիովին օգտագործել արևի էներգիան, վորը միայն ընկնում է Աֆրիկայում գտնվող Սահարա անապատի, այն էլ նրա մի մասի վրա։

Արեգակնային շարժիչներ հիմնելու համար շատ փորձեր են կատարվել։ Բայց դարձյալ այդ շարժիչները քիչ գործնական են։ Արեգակնային շարժիչները մեծ ուժ չեն ներկայացնում։ Այդպիսի շարժիչներից օգտվել կարելի յե միայն տաք յերկրներում։ Տաք յերկրներից էներգիա հաղորդելը մեր արդյունագործական շրջաններին՝ դեռ անլուծելի խնդիր է։ Այդպիսի շարժիչներ կան Կալիֆորնիայում և Յեգիպտոսում։ Մի հատ էլ կառուցվում է Խորհրդային Թուրքմենստանում։

Արեգակի ճառագայթները հավաքվում են այդպիսի շարժիչների մեջ հայելիների միջոցով, կենտրոնանում են մի կետի վրա և տաքացնում են մեքենայի կաթսայի ջուրը։

Այդ կերպ արեգակի ճառագայթը շարժման մեջ է դնում և՛ արեգակնային շարժիչը, և՛ հողմաղացը, և՛ ջրի տուրբինը, և շոգու մեքենան։ Արեգակի ճառագայթը տաքություն է տալիս ձմեռը վառարանին և վառվում է էլեկտրական լամպի մեջ։

Այդպիսով մարդն իր խելքով հասել է այնտեղ, վոր օգտվում է արեգակնային էներգիայի պաշարից, այդ էներգիան վերածելով զանազան ձևերի և ուղարկելով տեղից տեղ, հեռավոր տարածություններ։

Էներգիայի բոլոր տեսակներից ամենաէժանը, ամենաձեռնտուն և ամենահարմարը գործածման մեջ՝ այդ էլեկտրական էներգիան է։

Ահա թե ինչու էլեկտրակայանների կառուցումն այնքան մեծ նշանակություն ունի մեր արդյունագործությունը զարգացնելու համար։

Ն. ԲՈՒԼԱՏՈՎ

# ԸՆԿԵՐՆԵՐ



ԽՍՀՄ-ի պիոներական բոլոր կազմակերպությունները միջոցներ են հավաքում „ՊԻՈՆԵՐ“ օդանավի կառուցման համար։

Հայաստանի պիոներիան նույնպես պետք է անցնի այդ աշխատանքին։

„Պիոներ“ օդանավը պիոներական յերկու միլիոնի պատասխանն է Չեմբերլենին։

Բոլոր կոլեկտիվները հենց հիմիկվանից պետք է անցնեն միջոցների հավաքման։ Հարկավոր է այդ կամպանիայի մասնակից դարձնել նաեվ բոլոր անկազմակերպ պատանիներին։

„Պիոներ“ օդանավի համար հավաքված գումարները պետք է ուղարկել Հայաստանի պիոներների Կենտրոնական բյուրոյին։

# ՀԻՇԻՐ

**ՀԻՇԻՐ**

Իտալացի բանվոր-հեղափոխականներ՝ ՆԻԿՈԼԱ ՍԱԿԿՈՅԻՆ յեվ ԲԱՐՏՈԼՈՄԵՈ ՎԱՆՑԵՏՏԻԻՆ, վորոնց մահվան պատժի յենթարկեցին օգոստոսի 22-ի լույս 23-ի գիշերը:



**ՀԻՇԻՐ**

Յոթը տարվա նրանց անձկարագրելի տանջանքները բանտում՝ մահվան սպառնալիքի տակ. յեվ վերջը՝ հակառակ աշխատավոր միլիոնների կամքին՝ նրանց մահն էլեկտրական բազկաթոռի վրա:

## ՈՎՔԵ՞Ր ԵՅԻՆ ՍԱԿԿՈՆ ՅԵՎ ՎԱՆՑԵՏՏԻՆ ՅԵՎ ԻՆՉՈ՞Ւ ՆՐԱՆՑ ՍՊԱՆԵՑԻՆ

Յուրաքանչյուր պիոներ գիտե, վոր օգոստոսի 23 ին ամերիկյան դաժան բուրժուազիան էլեկտրական աթոռի վրա սպանեց 2 անմեղ հեղափոխական մարտիկների՝ Սակկոյին ու Վանցետտիին, բայց պիոներներից քչերը գիտեն այդ վոճրի պատճառներն ու պատմությունը:

— Ովքե՞ր էին Սակկոն ու Վանցետտին. Սակկոն ու Վանցետտին իտալացի բանվորներ էին, վորոնք Իտալիայից Ամերիկա էին գնացել, այնտեղ ավելի լավ պայմաններով աշխատանք գտնելու հույսով: Նրանք յերկուսն էլ անհայտ մարդիկ էին, բայց նրանց հայտնի դարձրեց ամերիկյան «արդարադատությունը»:

Ամերիկայում Սակկոն աշխատում էր մի կոշկի գործարանում, իբրև բանվոր, իսկ Վանցետտին սկզբում զանազան հյուրանոցներում ամաններ էր լվանում և դրանով պահում էր գոյությունը: Վերջին տարիները առողջությունը խանգարված լինելու պատճառով, Վանցետտին թողել էր այդ գործը և փողոցներում ձուկ էր ծախում: Յերկուսն էլ աշխատում էին ամենավառ պայքարներում, ուստի լավ էին հասկանում բանվորների վիճակը և անխոնջ պայքարում էին նրանց վիճակի բարելավման համար:

1920 թ. Ամերիկայում խիստ հալածանք էր սկսվել հեղափոխական բանվորության դեմ. Բազմաթիվ հեղափոխական բանվորներ զոհ են գնում այդ հալածանքներին: Ամերիկյան կառավարությունը միջոցներ չէր խնայում խեղդելու հեղափոխական ամեն մի շարժում և անխնա տանջում ու մահվան էր դատապարտում բոլոր նրանց, վորոնք վորևէ կերպ մասնակցություն էին ցույց տալիս այդ շարժմանը:



Այս բազկաթոռի վրա մահացան Սակկոն և Վանցետտին

Սակկոն ու Վանցետտին այդ ժամանակ ակտիվ հեղափոխականներ էին և յեռանդուն մասնակցություն էին ցույց տալիս հեղափոխական շարժմանը: Նրանք ագիտացիա էին մղում լայն բանվորական շրջաններում հօգուտ հալածվող հեղափոխականների, թռուցիկներ էին տպում, ցույցեր էին կազմակերպում: Կառավարությունը չէր կարող այլևս ուշադրության չառնել նրանց, մանավանդ վոր նրանք գիտեին, թե գաղտնի բանտերում կառավարությունն ինչպես էր տանջում հեղափոխականներին և այդ մասին պատմում էին բանվորներին:

Հարկավոր էր մեջտեղից վերցնել կառավարական գաղտնիքները հրապարակող այդ հեղափոխականներին: Բայց դրա համար հարկավոր էր մի առիթ. և կառավարությունն սկսում է փնտրել այդ առիթը, վորը և շուտով ներկայանում է:

1919 թ. վերջերին և 20-ի սկզբներին մի շարք կողոպուտներ ու սպանություններ են կատարվում Ամերիկայի Մասաչուսեց նահանգում, վորոնց հեղինակներն անհայտ են մնում:

1920 թ. ապրիլ 15-ին Սաութ-Բրեյնտրի քաղաքում անհայտ չարագործներ սպանում են կոշիկի գործարանի գանձապահին, տանում նրա մոտ յեղած դրամը: Այդ դեպքն առիթ է դառնում կառավարության համար, և նա այդ գործի մեջ մեղադրում է Սակկոյին և Վանցետ-

տրին, վորոնց շուտով ձերբակալում են։ Մասաչուզետի նահանգի դատարանին հաջողվում է նույնիսկ մի քանի սուտ վկաներ գտնել, վորոնք հայտարարում են՝ թե վոճիրը գործելիս տեսել են այդ յերկուսին։ Այդ վկաներից մեկը հետո խոստովանում է իր սուտ վկայություն տված լինելը։

Արդյունքում՝ բոլորովին անմեղ՝ մահվան դատապարտվում են Սակկոն ու Վանցետտին։

Սակայն հարցը դրանով չի վերջանում։ Ամբողջ աշխարհը գիտեր նրանց անմեղությունը։ Շատերը հետաքրքրվում եյին այդ գործով. շուտով կազմվում է Սակկոյի և Վանցետտիի պաշտպանության կոմիտե, վորն ամեն կերպ աշխատում է նրանց ազատել։ Ամբողջ աշխարհի պրոլետարիատը պաշտպան է կանգնում անմեղ բանվորին և պահանջում է ազատել նրանց։ Բոլոր յերկրներում բողոքի բազմաթիվ ցույցեր են կազմակերպվում ընդդեմ ամերիկյան «արդարադատության»։ Ամբողջ 7 տարի դատարանը չի համարձակվում ի կատար ածել մահվան դատավճիռը։ Պաշտպանության կոմիտեն նորանոր փաստեր է գտնում, վորոնք հերքում են նրանց վրա բարդված մեղադրանքը։ Վերջապես վոճրի իսկական հեղինակն յեվս գտնվում է ու խոստովանում իր հանցանքը։

Բայց վոչինչ չի ոգնում։ Ամերիկյան բուրժուազիան վորոշել եր, ինչ գնով էլ վոր լինի, մեջտեղից վերցնել յերկու անձնվեր հեղափոխականներին։ Յեվ ահա օգոստոս 22-ի լույս 23-ի գիշերը նա իրագործում է իր այդ վճիռը, ելեկտրական հոսանքով վերջ տալով նրանց կյանքին։

Այսօր այլևս նրանք չկան։

Բոլոր յերկրների պիոներները, նրանց հետ նաև մեր պիոներները գիտակցում են ամերիկյան բուրժուազիայի գազանային արարքը և դատապարտում են այն միաձայն։ Սակկոն ու Վանցետտին վոչ առաջինն են, վոչ էլ վերջինը։ Պրոլետարիատն իր պայքարի ճանապարհին շատ այդպիսի զոհեր է ավել և դեռ շատ պիտի տա։ Բայց այդ չի հուսահատեցնի պայքարող հեղափոխական մարտիկներին։ Սակկոն ու Վանցետտին չընկճվեցին ու չը հուսահատվեցին նույնիսկ իրենց կյանքի վերջին րոպեներին։ Ահա թե ինչ է գրում մահվանից մի քանի ժամ առաջ իր տղային Սակկոն։

«Արտասվելու տեղ՝ յեղիր ուժեղ։ Յերբեք մի մոռացիր ոգնության հասնել տկարներին, վորոնք ոգնություն են խնդրում, յեվ մի զլացիր ոգնություն շահագործվողներին, վորոնք քո լավագույն բարեկամներն են։ Նրանք ընկերներ ունեն, վորոնք պայքարել ու ընկել են, ինչպես քո հայրն ընկավ, վորովհետեվ պայքարեց բոլոր խեղճ աշխատավորների ազատության համար»։

Սակկոյի այդ վերջին խոսքերն ուղղված են վոչ միայն իր տղային, այլև մեզ բոլորիս, պրոլետարական յերեխաների միջազգային բանակին։

Կ. Մանվելյան

## ՍԱԿԿՈՅԻ ՎԵՐՋԻՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ

### 1. ՍԱԿԿՈՆ ԻՐ ԱՂՋԿԱՆ

Իմ փոքրիկ Ինես!

Ինչպես կցանկանայի ապրել յեղբորդ՝ Դանտեյի և մորդ հետ մի տնակում, թաղնված անտառի կանաչության մեջ, միաձուլված բոլորս միևնույն ուրախությամբ... Յեվ այնտեղ, ամառային միջորեյին, վորևե կաղնու ստվերի տակ, յես քեզ կառնեյի իմ ծնկների վրա և կսովորեցնեյի կարդալ, գրել, սիրել և հավատալ։

Սակայն այս բոլորը, թանգագին յերեխաս, չի կարող պատահել։ Մարդկային նախանձը չըցանկացավ այդ։ Չար ճակատագիրը բաժանեց մեզ։ Հոգևարքի մեջ գտնվող այդ հին հասարակակարգը դուրս պոկեց ինձ դաժանորեն ձեր մոր և ձեր սիրո գրկից, իմ սիրելի յերեխաներս։ Դուք զուր եք սպասում ինձ...

Ողջունում եմ քեզ, իմ սիրելի Ինես, շնորհակալություն հայտնիր այն բոլոր բարեկամներիս, վորոնք պայքարում են իմ ազատության համար և թող վոր ես ամուր գրկեմ քեզ, յեղբորդ և ձեր սիրելի մորը։

### 2. ՍԱԿԿՈՆ ԻՐ ՎՈՐԴՈՒՆ

Մահապատժից առաջ Սակկոն հետևյալ նամակն է գրում իր 14-ամյա վորդի Դանտեյին.

«Մինչև այժմ, յես միշտ հավատում եյի, թե մենք չենք բաժանվի իրարից։ Այժմ, յոթ տարիներից հետո, առաջին անգամը յես տեսնում եմ, վոր հասել է բաժանման ժամը։ Մենք բոլորս շատ տանջվեցինք և ի զուր արցունքներ թափեցինք, մանավանդ շատ արտասվեց մայրիկդ, վորին այժմ դու պիտի ոգնես։ Բայց պիտի ոգնես նաև նրանց, վորոնք թույլ են և վորոնք ոգնություն են խնդրում։ Յեվ այսպես, դու պիտի աշխատես ազատության համար։ Քո բարեկամներն ու ընկերները պետք է լինեն նրանք՝ վորոնք, ինչպես յես ու Վանցետտին՝ պայքար են մղում յեվ հույս ունեն հասնել ամբողջ աշխարհի բանվորների ազատությանը։ Յես կցանկանայի քեզ տեսնել ևս մի անգամ, բայց գուցե ավելի լավ կլինի, վոր դու չտեսնես իմ որհասական կռիվը մահվան դեմ։ Բայց գուցե ավելի լավ կլիներ, վոր դու տեսնեյիր, թե ինչպես են սպանում ինձ, վորպեսզի պատմեյիր այդ ամբողջ աշխարհին։ «Ձեր հայրը»

# ԿԱՐՄԻՐ ՆԱՎԱՍՏՈՒ ՆԱՄԱԿԸ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

## ԿԱՐՄԻՐ ՆԱՎԱՏՈՐՄԸ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Ե ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

Սիրելի Նինել յեվ Կարլ!

Այսօրվա իմ նամակում ուզում եմ պատմել ձեզ մեր կատարած ռազմա-ծովային արշավի մասին, վոր դուք եվ իր հերթին պատմեք ձեր ընկեր պիոներներին։

Ընկ. Ռոշալի անվան ռազմա-ծովային քաղաքական ակումբը իր ուսումնական տարվա աշխատանքները վերջացնելուց հետո՝ ամբողջապես պիտի գնար Բալթիկ ծովը — ամառային ռազմական արշավին մասնակցելու, ռազմա-ծովային գործնական աշխատանք կատարելու համար։

Առավոտյան ժամի 9ն եր։ Բոլորը, իրերը հավաքված, պատրաստ եյին, յերբ Կրոնշտադից*) դպրոցի պետ Մուրավյովին հայտնեցին, վոր «Լաղոգա» նավը ժամը 10-ին 5 րոպե դուրս կգա Գրեբնոյ նավահանգստից. դպրոցի ուսանողությունը պատրաստ պիտի լինի մեկնելու Կրոնշտադ՝ ռազմանավերում տեղավորվելու համար։

Յերբ Բալթյան կ. նավատորմիղի բարձր հրամանատարության այս հրամանը կարդացվեց զինված շարքի առաջ, Դմիտրի Մերկուշեվը փսփսաց ականջիս.

— Մկրտչյան, տես, հենց ես րոպեյից շոշափելի յե դառնում յուրաքանչյուր վայրկյանի թանկությունը ռազմական կյանքում։

— Верно,- պատասխանեցի կամաց, շարքում խստությանը վերջ տալու նպատակով։

Բոլոր կուրսանտ-նավաստիների յերեսին խաղում եր ուրախ ժպիտը։

Նրանք զգում եյին, վոր ձմեռվա ընթացքում իրենց ստացած գիտելիքները պետք կիրառեն գործնականում, պետք ծանոթանան «Մարատի» թնդանոթների աշտարակների ու «Կոմսոմոլեցի» կայմերի հետ։

Նրանք անհամբեր սպասում եյին այն վայրկյանին, թե յերբ նրանք կմտնեն «Փարիզյան կոմունա» և [illegible] ռազմանավերի հսկայական թնդանոթների հետ, վորոնցից գիշեր ցերեկ [illegible] Չեմբերլեններն ու Պուանկարեները։



Ընկ. Գ. Մկրտչյան

Յուրաքանչյուրին այս միտքն եր զբաղեցնում, յերբ հրամանատար Դացիշինը հանկարծ վորոտաց,

— Զգաստ։ Աջ դարձ։ Առաջ։

Յեվ „Берегись Фашисты„ յերգի խրոխտ հնչյունների տակ շարժվեցինք դեպի Գրեբնոյ նավահանգիստը։

Ժամն ուղիղ 10ն եր։

Մեկնից քառորդ ժամ առաջ, Գրեբնոյ նավահանգստում շարվել եյին ստորջրյա և ջրա-ոդային նավատորմիղի մարտիկ նավաստիների վաշտերը՝ Ռոշալցիներին բարի ճանապարհ մաղթելու համար։

Տեղավորվեցինք «Լաղոգայի» վրա։ Նրա սուլիչը յերեք անգամ սուլեց. բոլորն ընդունեցին զգաստ դրությամ, յեվ [illegible] շարժվեց դեպի Օրանիենբաում։

Ափում կանգնած ընկերները անվերջ ողջունում եյին.

Ուռա՜ ռոշալցիներին։

— Ուռա՜ Բալթյան կ. նավատորմիղին նվիրված կարմիր նավաստիներին։

Ափից հեռացանք թե չէ, Կոտյա Սոլովեվը [illegible] (տրբին [illegible]) [illegible] բերեց գարմոշկան և իր ձայնով վարժ կարծումով [illegible] «Կարինկան»։

— Եհ, տղաներ, սկսենք պարել։

[illegible] բաշխեցին և նաև [illegible] նավաստիների համար [illegible] թյուն, [illegible] Կոլյա Մ[illegible] պարել։

— Ապրես, մեր տղա, ապրես,— լսվում եր ամեն կողմից։ Մարու[illegible] փոխարինեցին շառ-շառ[illegible] ավելի վոգեվորված, [illegible] առաջին [illegible] եր հնչում։

Լենինգրադի [illegible] ծխնելույզներից [illegible] քուլա բարձրացող սև ծուխն այլևս չեր յերևում։ Չեր յերևում նաև ափը։ Միայն փարվատեր (ապահով ճանապարհ) ցույց տվող ցուցափայտերն եյին յերևում։ Քիչ անց, յերևացին արդեն Օրանիենբաումի անտառների բարձր կատարները։ Ժամը 2 ին հասանք Օրանիենբաում և շարժվեցինք դեպի «Կոմսոմոլեցն» ու «Ավրորան» (ռազմանավեր), վորոնք սպասում եյին մեզ՝ նրանց հյուրերին։

Յերեկոյան ժամը 6-ն եր, յերբ դուրս յեկանք «Լաղոգայից» և վոտք դրինք «Կոմսոմոլեցի» 2 սաժենանոց սանդուղքի վրա։

Մեր կյանքն սկսեց յեռալ ռազմանավում։ Այդ գիշերը քնեցինք խառը զգացմամբ։ Հաջորդ առա-

*) Ծովային բերդաքաղաք Բալթիկ ծովի ափին։ Այնտեղ են կենտրոնացած ԽՍՀՄ ռազմածովային ուժերը։

վրա ամեն ինչ կարգի բերվեց և «Կոմսոմոլեցը» պիտի շարժման մեջ դներ իր սիրտը — մեքենաները։

Առավոտյան ժամը 8-ին ռուշալ-ցիների ընդունելու պատրաստու-թյունը, ինձ բաժին հասավ նավի



Պահպանում են կարմիր սահմանները

ծայրում նստողի աշխատանքը, վորտեղից պիտի զեկուցեյի կամըր-ջակի վրա կանգնած հրամանա-տարին՝ հորիզոնում յերևացող նավերի մասին։

Տրվեց առաջ շարժվելու հրա-մանը։

«Կոմսոմոլեցն» առաջ սլացավ և հետզհետե արագացրեց ընթացքը։

Ավագ շտուրման Կոսովը կա-մրջակից կողմնացույցով անվերջ ուղղություններ եր վերցնում



Միտինգ ռազմանավի տախտակամածի վրա

նավի տեղը վորոշելու համար և բացատրում ռուշալցիներին վորոնք հավաքվել եյին նրա շուրջը։

Մեր ճանապարհին փռվել եյին բազմաթիվ ռազմանավեր, իսկ մեզ հետ շարժվում եյին ականակիր-ներ՝ «Սերիցկին», «Զինովևը», սուզանավեր № 9-ը № 6 և շատ ուրիշ-ները։

Առշավի դուրս յեկած ռազմա-նավերի շարքը բռնում եր 5 վերստ տարածություն։

Մի ամբողջ շրջան Ֆիննական ծոցում կատարելուց հետո մենք վերադարձանք։ Ճանապարհին մենք հանդիպեցինք «Հոկտեմբեր-յան հեղափոխություն» նավի ըն-կերների վողջույնին, վորոնք թնդանոթաձգություն եյին կատա-րում։ Թնդյուններից վորոտում եր ծովի մթնոլորտը։

Մեր արշավի ընթացքում կա-տարեցինք բազմաթիվ փորձնա-կան խուճապներ, վորի ընթացքում աչքի յեր ընկնում նավաստիների արագաշարժությունը և նվիրված աշխատանքը։

Սիրելի Կարլ և Նինել!

Նրանք գիտեյին թե ինչի համար են աշխատում։ Մեզ բոլորիս վո-գևորություն և ույժ եր ներ-շնչում մեր թնդանոթների բամ-բյունը։ Մենք գիտակցում եյինք, թե ինչ մեծ նշանակություն ու-ներ մեր այդ աշխատանքը, մենք սովորում եյինք խորհուրդների յերկիրը պաշտպանելու պատաս-խանատու գործը։

Սրանով վերջացնում եմ նամա-կը։ Գրեցեք պիոներական աշխա-տանքների մասին, թե ինչպես եք ռազմականացման յենթարկում ձեր շարքերը։ Բարևներ ընկերներին։

Ձեր՝ Գ. Մկրտչյան

Լենինգրադ—Կրոնշտադ

# ԻՆՉՊԵ՞Ս ՄԱՍՆԱԿՑԵԼ ԲԵՐՔԻ ՏՈՆԻՆ

Անցյալ տարվա Բերքի տոնը ցույց տվեց, վոր պիոներները կարող են իրենց մշակած բանջարեղենների, արմատապտուղների, խնամած թռչունների լավագույն օրինակները ցուցադրել այդ տոնին։

Բերքի տոնին մասնակցելու խնդիրը հար-կավոր է ժամանակին, հենց հիմիկվանից, քննու-թյան առնել հավաքույթում։ Հարկավոր է հենց հիմիկվանից վորոշել՝ թե ինչ պիտի ցուցադրի կոլլեկտիվը իր գյուղատնտեսական աշխատանքից։ Բացի այդ՝ անհրաժեշտ է պարզել, թե վո՞ր պիո-ները կարող է իր սեփական աշխատանքի ար-դյունքները տանել ցուցահանդես։ Այս բոլորը պիտի գրի առնել, ստուգել ու նայել ամբողջ ողակով, կոլլեկտիվով։

Հարկավոր է բանակցել մրցանակաբաշխու-թյան շրջանային հանձնաժողովի հետ, գյուղա-տնտեսական աշխատանքի մեջ աչքի ընկնող կոլլեկտիվներին և առանձին պիոներներին մըր-ցանակ՝ պրեմիա տալու համար։ Նույնիսկ կարելի յե շրջաններում միջկոլլեկտիվային մրցում հայ-տարարել։

## ԻՆՉ ՅԵՎ ԻՆՉՊԵ՞Ս ՑՈՒՑԱԴՐԵԼ ԲԵՐՔԻ ՏՈՆԻՆ

*ԲԱՆՋԱՐԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԻՑ.* — Կազմեցեք կոլեկցիա՝ յուրաքանչյուր բանջարաբույսից մի քանի հատ։ Լվացեք դրանք, կապեցեք և դասավորեցեք զամբյուղի մեջ։ Կարելի յե նույնիսկ առանձին-առանձին արկղիկների մեջ դասավորել։ Բացի այդ՝ ամեն մի բույսի համար պիտի տալ համապատասխան գրավոր բացատրություն. պարզ, խոշոր տառերով գրեցեք, թե վոր բույսից ինչքան է ցանված, ինչով և ինչպես է պարարտացված, ինչքան բերք է ստացվել մեկ քառակուսի մետրից։

Ցույց տվեցեք բանջարանոցի ընդհանուր տարածությունը, գրեցեք ձեր բանջարանոցի համառոտ պատմությունը (լավ կլինի առանձին թերթի վրա)։ Հետո, հարկավոր է ցույց տալ ստացված բերքի քանակը և բանջարանոցի հատակագիծը։

*ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԻՑ.* — Յեթե խնամել եք պտղատու ծառեր և այլն, այդ նկարագրեցեք դարձյալ թերթիկի վրա։ Բացի դրանից՝ ցուցահանդես բերեք ձեր խնամած պտուղների, մրգերի լավագույն տեսակները։ Հետո պատմեցեք, թե ինչ եք արել։ Չէ՞ վոր քիչ կոլեկտիվներ չկան, վորոնք կռվել են այգու վնասատուների դեմ, սրսկումներ են կատարել և այլն, Այդ թեև չի ցույց տալիս ձեր կատարած աշխատանքը, սակայն պատմում է նրա մասին։

*ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԻՑ.* — Անկասկած այս ասպարեզում կլինի ավելի շատ անհատական, քան թե կոլեկտիվ աշխատանք. այսինքն առանձին պիոներների աշխատանք։ Բայց այդ վոչինչ։ Հորթուկին լավ սնելը, ճագարի, խոզուկի, վոչխարի լավ ու ճիշտ կերպով խնամելը և այլն, այս բոլորը պիտի ցույց տալ, վորպեսզի մեծահասակները, կամ մյուս պիոներները, վոր վոչինչ չեն արել այդ ասպարեզում, տեսնեն, իմանան։ Հարկավոր է նաև առանձին թերթիկների վրա գրել, թե ինչքան և ինչպիսի կեր է տրված տվյալ անասունին, ինչքան է նստել փաստորեն այդ կերը և այլն։ Բացի դրանից, լավ կլինի նկարագրել, ինչպես է տարվել այդ աշխատանքը, պիոներներից շատերը խնամում են իրենց կովին, կերակրում են նրան նորմայով և այդ բոլորը գրում են։ Ահա հենց այդ գրածը պիտի ամփոփել և տանել ցուցահանդես։ Յեվ յեթե ցուցահանդեսը մոտիկ վայրում է կազմակերպված, կարելի յե ցուցահանդես տանել և այն կովը, վորին խնամել է պիոները։

Քիչ չեն մեզ մոտ և այն կոլեկտիվները, պիոներները, վորոնք լավ մուրճներ են պատրաստել։ Պատրաստել են նաև գյուղատնտեսական շենքերի և զանազան պարագաների մոդելներ և այլ։ Այս բոլորը պիտի գնահատել և տանել ցուցահանդես, վորպես պիոներների ընդհանուր աշխատանք։

*ՀԱՎԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԻՑ.* — Պիտի ցուցադրել նաև հավաբուծության և ընդհանրապես թռչնաբուծության ասպարեզում պիոներների կատարած աշխատանքը։ Ցուցահանդես պիտի տանել լավ հավերին, ճուտերին, վորոնց խնամել են պիոներները։

---

Հարկավոր է ցուցահանդեսի պիոներական բաժնում ունենալ մեկ կամ յերկու հերթապահ, վորոնք կարողանան գյուղացիներին մանրամասն բացատրել այն բոլորը, ինչ ցուցադրված է պիոներների կողմից։ Չպիտի մոռանալ ցուցադրել նաև պիոներական պատի թերթերը, պլակատները, աղջիկ պիոներների ձեռքի աշխատանքները։

Այն մասին, թե ինչպես մասնակցեցին պիոներները Բերքի տոնին և ինչպիսի պրեմիաներ ստացան գրեցեք «Պիոներին»։

Ս..

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**«ՄԻ ԳԱՎԱԹ ԹԵՅ» — ԽՆԿՈ ԱՊԵՐ. ԸՍՏ Ն. ԱԳՆԵՐՑԵՎԻ**, Պետհրատ Յերևան 1927 թ. եջ 16, գինը 60 կ.

Մանկական այս պոեմում Խնկո Ապերը պատմում է մանուկ ընթերցողներին չին գյուղացիների այն մեծ աշխատանքի մասին, վոր թափում են թեյի մշակության համար։ Այդ աշխատանքի արդյունքի մեծ մասը չարչիներն ու սպեկուլյանտներն են վերցնում, վորովհետև նրանք թեյը մի քանի անգամ պակաս արժեքով են գնում չին գյուղացիներից։ Ապա, գրքույկը պատմում է նաև այն բոլոր աշխատանքների մասին, վորոնց շնորհիվ հնարավորություն ենք ունենում Չինաստանում պատրաստված թեյը գործածել Հայաստանում։

Պոեմը գրված է աշխույժ և պարզ լեզվով, ինչպես առհասարակ Խնկո Ապոր մյուս գրքերը։ «Մի գավաթ թեյը» պետք է վոր լավ ընդունելություն գտնի պատանի ընթերցողների մեջ։

Գրքի հրատարակությունը մաքուր է և գեղեցիկ կերպով պատկերազարդված։

## ՄԵՐ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ ԲԱՆԱԿՈՒՄ

# ԹԵ ԻՆՉ ԽՈՍԵՑ ՍԿԱՈՒՏՆԵՐԻ ԱՌԱՋՆՈՐԴԸ

Վոստիկանը բարձրացրեց իր ձեռի փայտը և փողոցային շարժումը դադարեց։ Լսվեցին շոտլանդական պարկապզուկի և թմբուկների ձայները։ Փողոցով անցնում եր Լոնդոնի սկաուտական խմբերից մեկը։ Նա շտապում եր Լոնդոնի արևելյան մասը՝ բոյ-սկաուտների պարադի։

Զանազան բարձրաստիճան անձնավորություններ, կապիտալիստները շատ են հոգ տանում սկաուտների մասին. Նրանք գիտեն, վոր սկաուտական կազմակերպությունը նրանց հավատարիմ հենարանն է։ Յեվ իզուր չե, վոր նրանցից հազար, տասնյակ հազար ռուբլիներ են ստանում սկաուտներն իրենց կազմակերպության համար։ Իզուր չե, վոր թագավորները, իշխանները, կապիտալիստները սիրում են հաճախել սկաուտների պարադներին ու տոներին։

Սկաուտների խումբը մտեցավ **Ոլիմպիայի**—ահագին կրկեսին, վորը հանդիսանում է սկաուտական տոնախմբությունների վայրը։ Կրկեսում 10,000-ից ավելի սկաուտ եյին հավաքվել։

— Աղոթքի,...—լսվեց հրամանը տրիբունից։ Տրիբունի վրա յե ամբողջ աշխարհի սկաուտների կազմակերպիչը և առաջնորդը, նախկին գեներալ և Հարավային Աֆրիկայի վոստիկանության պետ՝ Րոբերտ Բադեն Պաուելը։ Նրան շրջապատել են մի քանի տերտերներ, անգլիական թագավորի վորդին, մի խումբ գեներալներ և սկաուտական պետեր։

Աղոթքը վերջացնելուց հետո, խոսում է սկաուտական միջազգային բյուրոյի ղեկավարներից մեկը.

— Յեղբայր սկաուտներ և սկաուտմաստերներ,—սկսեց նա,- մեր շարժումը խոշոր նվաճումներ է անում։ 1926 թվի ընթացքում սկաուտների թիվն ամբողջ աշխարհում 79.147 հոգով ավելացել է և հաշվվում է 1.639,644 սկաուտ, իսկ գըրլ—սկաուտների (աղջիկ-սկաուտներ) շարժման մեջ մասնակցում են 680,000։ Սկաուտական շարժումը ներկայումս խոշոր կարեվորություն է ստանում այնպիսի մի շրջանում, յերբ խնդիր է դրված կռվել այն անաստված, հանցավոր ալիքի դեմ, վորն առաջանում է Արևելքից։ Խորհրդային կառավարությունը և Յերրորդ Ինտերնացիոնալը ուժեղացնում են իրենց պրոպագանդն յերիտասարդության մեջ վորպեսզի նրանց բոլշևիկական հավատի դարձնեն։

Խորհուրդները ճնշում են հոգևորականներին, սրբապիղծ հանդեսներ են հրատարակում, ատելությամբ են վերաբերվում դեպի ծնողները։ Խորհուրդները Ռուսաստանում կազմակերպել են կարմիր պիոներներին, վորոնք ծառայում են չեկայում, լրտեսություններ են անում։ Յուրաքանչյուր դպրոցում կա պիոներական ֆորպոստ, վորը «չեկայի աչքի» դերն է խաղում։ Ֆորպոստը պիտի հետևի ուսուցիչներին և հանձնի չեկայի ձեռքը։ Պիոներները «չեկայի աչքն» են հանդիսանում նաև իրենց սեփական ընտանիքներում։ Կա հատուկ հրահանգ, վորը ցույց է տալիս, թե ինչպես են պիոներները լրտեսելու իրենց ծնողներին և գրավելու կոմունիստական կուսակցության շարքերը։ Բացի այս բոլորից, զանազան արատները, հանցագործությունը Ռուսաստանի յերիտասարդության ու յերեխաների մեջ տարածված են։

Յուրաքանչյուր սկաուտ պիտի պայքարի այդ սարսափելի յերևույթի դեմ, պիտի զգուշացնի պիոներների ծնողներին՝ նրանց յերեխաներին սպառնացող վտանգի մասին, պիտի զգուշանա, վոր ինքը չընկնի կոմունիստների թակարդը։ Յես ձեզ հիշեցնում եմ այն յերեք սկաուտների մասին, վորոնք 1923 թվին համարձակվել եյին իրենց խմբապետին առաջարկել, վոր խմբի մեջ կոմունիստական ինքնավարություն մտցնի և լրացնի խումբը՝ ի հաշիվ մոտական կիրակնորյա կոմունիստական դպրոցում սովորող յերեխաների։ Մենք հեռացրինք նրանց սկաուտական շարքերից։ Թող այդ միշտ որինակ ծառայի բոլոր սկաուտներին։

Յես պետք է ձեզ շնորհակալություն հայտնեմ այն որինակելի աշխատանքի համար, վոր կատարեցիք դուք ընդհանուր գործադուլի՝ մեր թագավորի և կայսրության դեմ ուղղված հարձակման ժամանակ։ Սկաուտները կապ եյին պահպանում, աշխատում եյին ելեքտրո-կայաններում և ավտոմոբիլների վրա և այլն։

Դուք քիչ բան չեք արել «կարմիրներին» խայտառակելու համար։ 15,000 սկաուտների հիշատակը, վորոնք ընկել են մեծ պատերազմում՝ բրիտանական կայսրության համար, չի արատավորված։

Յեթե Չինաստանում խոշոր սկաուտական կազմակերպություն լիներ, այն ժամանակ բոլշևիկ քարոզիչները վոչ մի հաջողություն չեյին ունենա։ Հիշեցեք այս որինակը և մի ընկնեք յերբեք «կարմիրների» ազդեցության տակ։ Հանուն աստուծո, թագավորի և հին Անգլիայի։

Այդ ճառից հետո սկսվեց սկաուտական կազմակերպության նվաճումների ցուցադրումը։ Կրկեսի մի անկյունում մի խումբը կամուրջ եր պատրաստում, մեկ ուրիշ խումբ զբաղվում եր նշանախոսությամբ։ Հետո սկաուտները ցույց եյին տալիս սանիտարական գործում և այլ աշխատանքների մեջ ունեցած իրենց նվաճումները։

— Այո, լավ զինվորներ կլինեն մեր տղաները,—ասաց մի ծերունի գեներալ, վորն անցնում եր սկաուտական շարքերի միջով։

— Բացի դրանից, ձերդ մեծություն, նրանք այնպիսի զինվորներ կլինեն, վոր ապահովված կլինենք ամեն տեսակի ապստամբություններից բանակի մեջ և կկրակեն բոլոր նրանց վրա, վորոնց մենք կմատնանշենք։

---

Պատասխանն այն հարցի, թե կմեծանա՞ն արդյոք, սկաուտներից կապիտալիստներին հլու բանվորներ ու գյուղացիներ—ամբողջովին կախված է անգլիական պիոներներից։ Նրանք պիտի պրոլետարական հազարավոր յերեխաներ խլեն սկաուտական կազմակերպությունների ազդեցությունից։

**Ս.ե.Նյե.**

# ՈՎՔԵՐ ԵՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՎՈՒՄ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԿՏԻՎԻՑ ՅԵՎ ՈՂԱԿԻՑ

**ՏԵՔՍՏԻԼ**



*Ընկ. Դ. Հախումյան—աշակերտ*

### ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՇԽԱՏՈՂ ՄԵՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Լենինականի Տեքստիլ գործարանում ներկայումս զգալի թվով աշխատում են նաև պիոներ—կոմյերիտականներ։ Գործարանում աշխատող պիոներներն ընդունակ և առաջադեմ են յեղել, նրանք կարողացել են կարճ ժամանակամիջոցում գրավել վարպետների ուշադրությունը և արագ կերպով վորակավորվում են։ Ոչ մի պիոների կողմից աշխատանքից խուսափելու դեպքեր և անհարգելի բացակայություններ չեն յեղել, վորի շնորհիվ ավելի յե բարձրացել նրանց հեղինակությունը։

Պիոներներն այսպիսով իրենք էլ են մասնակցում մեր սոցիալիստական շինարարությանը։

**Վ. Ռզնունի**

Լենինական

### ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԲԱՄԲԱԿԸ ԲԵՐՔԻ ՏՈՆԻՆ

Այս տարի մեր շրջանի պիոներական կազմակերպությունը մեծ հաջողություններ է ունեցել գյուղատնտեսական աշխատանքների ասպարեզում։

Օրինակ. Ղուրդուղուլի գյուղի պիոներական կոլեկտիվը դպրոցապատկան հողամասում ցանել է բամբակ և յոնջա։ Այդ աշխատանքն ամբողջովին (քաղհան, ոռոգում, ջրել և այլն) կատարել է իր ուժերով։

Բացի դրանից, պիոներները սովորել են՝ թե գիտական ձևով ինչպես կարելի յե բամբակը մշակել և խնամել։

Նոր ձևերով բամբակ մշակելու նրա լավ փորձի համար, շրջանային մրցանակաբաշխության հանձնաժողովն արժանացրել է այդ կոլեկտիվին 1-ին կարգի մրցանակի: Մրցանակը տրվելու յե Բերքի տոնին:

Այդ աշխատանքների ընթացքում շրջպրոկայանի վարիչ ընկ. Սուրենը լայն աջակցություն է ցույց տվել գյուղատնտեսական գործիքներով և միշտ խորհուրդներ է տվել պիոներներին։

Բացի դրանից՝ պիոներները բամբակ են ցանել նաև Գեջլրու և Մեծ Շահրիար գյուղերում։

**Մ. Միքայելյան**

**ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ**



*Իր սիրելի մեքենայի հետ.*

### ԻՆՉՊԵՍ Է ԱՇԽԱՏՈՒՄ ՄԵՐ ՍԱՆԿՈՄԸ

Սանահինի կայարանի պիոներական կոլեկտիվի սանկոմը աշխատանքի բոլոր հարմարությունները ունի։ Ունի գոգնոցներ, սրբիչներ, 2 հատ պատգարակ, դեղեր։

Ինչ աշխատանք ենք տարել։ Օրինակ, մայիսի 1-ին Ուզունլար գնալիս մի փոքրիկ տղա տրակտորից վախեցել էր և ուշաթափվել, մեր սանկոմը ուշքի բերեց նրան։ Հետո Ալլահվերդի գնալիս մի կին շոգից ուշաթափ էր յեղել, դրան էլ ուշքի բերեցինք։ Հետո յերբ գնացինք լողել, այնտեղ պատահեցին շատ դեպքեր, բայց մենք միշտ օգնության ենք հասել։

Վերջերից ենք սովորել առաջին օգնության գործը։ Սանկոմի անդամները գնացել են բժշկի մոտ և նա սովորեցրել է նրանց, թե ինչպիսի դեպքերում ինչ օգնություն պիտի հասցնել։ Մենք հաճախ մեր ձեռք բերած գիտելիքներն ողակային հավաքույթների ժամանակ բացատրում ենք պիոներներին։

Այսպես է աշխատում մեր սանկոմը։

**Աննա Այվազյան**

**Սանահին**

### ՅԵՐԵՎԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԱԶՄԱԿԱՆ ԱՐՇԱՎԸ

Յերևանի պիոներական կազմակերպության ռազմական արշավանքը կայացավ սեպտեմբերի 17-18-ին։ Արշավանքին մասնակցում եյին 150 պ'ոներ։

Արշավանքը ղեկավարում եյին № գնդից նշանակված հրամանատարները։ Պիոներներին բաժանված եյին հրացաններ, բահեր, հակագազեր և այլն։ Այդ որը գիշերեցինք վրանների տակ, Ք. գյուղի այգիների մոտ։ Հրամանատարները բացատրեցին պիոներներին յերթային շարժման կարգն ու կանոնները։ Վաղ առավոտյան մի քանի պիոներների ուղարկեցինք

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՇԱՐՔԵՐՈՒՄ

## ԴԵՊԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ

հետախուզության, վաղորդ նրանց բացատրվեց հետախույզի դերն ու նշանակությունը։ Հետո պիոներներին հրամանատարները ծանոթացրին հրաձգի պարտականությունների մասին։

Այդ բոլոր բացատրությունները լսելուց հետո անցանք գործի։

Պիոներները մեծ հետաքրքրությամբ ու ջեռանդուն կերպով կատարում էին բոլոր գործողությունները։ Մոտ 3 կիլոմետր հեռավորությունից կ․րճ ժամանակում տեղեկություններ էին տալիս հրամանատարությանը։

Ռազմական խաղն ավարտելուց հետո վերադառնում ենք դեպի Երևան։

Արդեն մութ է։ Քայլում ենք Աբովյան փողոցով։

Արշավին չմասնակցող պիոներները դիմավորում են արշավին մասնակցող ընկերներին։

Պ. Դավթյան

### ՏԵՔՍՏԻԼ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ



Պիոներ — աշակերտը դազգյահի առաջ

### ՏԵՔՍՏԻԼ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Նախկին պիոներ, 1925 թվ. աշխատում է գործարանում, այժմ ջրամանողուհի



Ընկ. Վ. Բզնունի — աշակերտ «Պիոներ» հանդեսի պատկեր

### ԳՐԱԿԱՆ ԴԱՏ

Վերջերս Դիլիջանում կազմակերպվեց քաղաքի պիոներական պատի թերթերի վրա գրական դատ։

Դատարանը քննության առավ 3 պատի թերթ։ Քննությունը պարզեց հետևյալ բացերը.

1. Թերթերը խնամքով չեն գրըված։

2. Նկարազարդ չեն, իսկ նկարներն էլ լավ չեն։

3. Թերթերի բաժինները անկանոն են դասավորված։

4. Թերթերում քիչ տեղ են բռնում զվարճալիքները, խնդիրներն ու ռեբուսները։

5. Հոկտեմբերիկների կյանքն ու աշխատանքները քիչ են լուսաբանվում։

6. Թերթերում չկա կոմյերիտական բաժին։

Այս թերությունները նկատի առնելով դասարանը մի շարք միջոցներ առաջարկեց դրանք վերացնելու համար։

Խմբկոմները պիտի աշխատեն թերթերն ավելի նկարազարդել, այդպիսով նրանք ավելի գրավիչ կլինեն և ավելի շատ ընթերցողներ կգրավեն։ Ստացված նյութերը՝ նախքան պատի թերթում արտագրելը՝ հարկավոր է ուշադրությամբ ուղղել, լավ խմբագրել, ապա գրել պատի թերթում։ Վերջապես հարկավոր է նաև մեծ տեղ տալ խնդիրներին, զվարճալիքներին և ռեբուսներին։

Կարելի է ասել, որ այս դատը խոշոր նշանակություն կունենա մեր պատի թերթերի համար։ Խմբկոմները՝ ղեկավարվելով դատարանի տված ցուցմունքներով՝ կվերացնեն պիոներական պատի թերթերում նկատված բացերը։

Հարկավոր է այսպիսի դատեր ավելի հաճախ կազմակերպել։

Նորվեց

Դիլիջան

# ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՂԱՐԱՔԻԼԻՍԱՅԻՑ

Առաջին անգամն եր, վոր յես յեղա Ղարաքիլիսայում։

Ինձ շատ եր հետաքրքրում տեսնել նրա մառախլապատ սարերը և անտառները, կարմիր բանակայինների լագերը և նրանց ամառային կյանքը. այս բոլորի մասին ինձ պատմել եր իմ կարմիր բանակային յեղբայրը, դեռ անցյալ տարի, լագերից վերադառնալիս։

Ինձ շատ եր հետաքրքրում նույնպես տեսնել Ղարաքիլիսայի պիոներներին ու կոլլեկտիվներին, թե ինչպես են նրանք աշխատում և ինչպես է անցնում նրանց կյանքը։

Հենց առաջին իսկ որից յես ծանոթացա և ընկերացա մեր բակում ապրող յերեք տեղացի պիոներների հետ, վորոնք ինձ աջակցեցին իմ ցանկացածը տեսնելու և ուսումնասիրելու։

* * *

Ընկերներիս հետ ձեռք-ձեռքի տված բարձրանում ենք անտառը նրա լանջին, ձյունապատ լեռների գագաթների պես, շարված են կարմիր բանակի վրանները, վորոնց տակ նստած են կարմիր բանակայինները։ Նորից շարունակում ենք բարձրանալ, և ահա կանգնած ենք անտառի մեջ և սարի բարձր գագաթում. ընկերներս ինձ բացատրում եյին ծառերի տեսակները և յես այդ բոլորը նշանակում եյի իմ հուշատետրի մեջ։ Մեզնից մի փոքր հեռու լսվում եր ճիչ ու աղաղակ. մենք մի քիչ առաջ անցնելով հանդիպեցինք մի խումբ պիոներների, վորոնք նույնպես յեկել եյին հեռու տեղերից և բարձրացել եյին անտառը դիտելու։

* * *

Մյուս որը, ընկերներիս հետ, յես գնացի բանվորական ակումբը. մտնում եմ ներս և աչքիս առաջ



Կ. Բանակի լագերում

պատկերանում է մի շատ գեղեցիկ տեսարան։ Պատերը զարդարված են ը՛կ. ընկ. Լենինի, Շահումյանի, Ռիկովի և մյուս հեղափոխական գործիչների նկարներով։ Ապա յես շատ հետաքրքրությամբ մոտեցա ընկ. Լենինի անկյունին և լավ դիտեցի. անկյունում, կարմիր կտորներով զարդարված փոքր սեղանի վրա, դրված եր ընկ. Լենինի կիսանդրին, իսկ շուրջը շարված եր նրա գրած գրքերը։

Յես ցտեսություն տալով ակումբի վարիչին դուրս յեկա և ընկերներիս հետ միասին գնացինք «Փարիզյան կոմունա» պիոներական կոլլեկտիվը, վորը պատրաստվում եր գնալ մարզանքի։

Յես ծանոթացա կոլլեկտիվի պիոներների հետ, և յերբ նրանք իմացան, վոր յես յեկել եմ Յերեվանից, շրջապատեցին ինձ և սկսեցին հարց ու փորձ անել մեր աշխատանքներից, յես ել ծանոթացա նրանց աշխատանքների հետ և մտնելով կոլլեկտիվի շարքերը, նրանց հետ միասին գնացինք մոտիկ հրապարակը մարզանքներ կատարելու։

Յերեկոյան յես, պիոներ ընկերներիս հետ՝ ծանոթացա քաղաքի փողոցներին և տեսա ընկ. Լենինի մեծ արձանը, վոր կանգնեցրած եր հրապարակում. նա մի ձեռքը վեր եր բարձրացրել ու կարծես թե խոսում եր և ինչ վոր մի տեղ ցույց տալիս. այդ ժամանակ յես իմ մտքում կրկնեցի «միշտ պատրաստ եմ» և հեռացա։

Մի քանի որից հետո յես գնացի Կարմիր բանակի լագեր տեսնելու, այնտեղ վրանների տակ, «կարմիր անկյուններում», բանակայինները շարքով նստած ընթերցում եյին թերթեր ու գրքեր. մի հարթ տեղում բանակայինները դհոլ զուռնով «քոչարի» եյին պարում, իսկ վրաններից քիչ հեռու բանակային ֆուտբոլիստների մրցում եր։ Մի քանի վրանների առջև բանակայինները զանազան ծաղիկներ եյին տնկել, վորոնց հոտը բուրում եր վրանների մեջ։ Կարմիր բանակի լագերային կյանքն ինձ վրա շատ լավ տպավորություն թողեց և յես ուրախ սրտով վերադարձա տուն։

Պատկեր՝ **Վ. Պետրոսյան, Ղամարլու**

# Ի՞ՆՉ ՊԻՏԻ ԿԱՐԴԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

**«ԲԱԴԱԼԸ» — Գ. ՄԵՍՅԱՆ**, *1926 թ. Թիֆլիս. էջ՝ 16, գինը՝ 24 կ.*

«Բադալը» կարդացող պատանի ընթերցողը կհիշի Հ. Թումանյանի «Գիքորը»: Յերկու գրքույկների մեջ էլ նկարագրված է գյուղից քաղաք բերված պատանին, վորի հայրը նպատակ ունի իր վորդուն **աշակերտ** տալ քաղաքում, վորպեսզի նա **«մարդ դառնա, գրել կարդալ սովորի»** ու իր պես **«խեղճ ու կրակ չմնա»**: Բայց այդ յերկու գրքույկները տարբերվում են միմիանցից նրանով, վոր «Գիքորի» մեջ Գիքորն յենթարկվում է բազազ Արտեմին, համակերպվում է իր դրության հետ և հիվանդանում ու մեռնում է, այն ինչ Բադալը, մի կողմից խազեյինի դպրոցական վորդուց գրել կարդալ սովորելով, մյուս կողմից՝ միանալով այն գործնոցի բանվորների հետ, վորտեղ ինքն աշակերտ է մտել, նետվում է հեղափոխական ալիքների մեջ, մասնակցում է հեղափոխական ընդհատակյա աշխատանքին:

Հեղափոխությունից հետո Բադալը դառնում է խոր՚րդային մեծ գործիչ, միշտ կապ է պահում իր հայրենի գյուղի հետ: Արժե, վոր մեր պիոներները կոլեկտիվներում կոլեկտիվ ընթերցանության նյութ դարձնեն «Բադալն» ու «Գիքորը» և նրանց շուրջը կատարեն մտքերի փոխանակություն, համեմատության մեջ դնելով այդ յերկու գրվածքները:

**«ԻՆՉՊԵՍ ՊԵՏԻԿԸ ԼԵՆԻ-ՆԻ ՄՈՏ ԳՆԱՑ», ՊԱՎԵԼ ԴՈՐՈԽՈՎ**, *Թարգմ. Հար. Ներսոյան, Պետհրատ, Յերևան, 1927 թ. էջ՝ 47 գինը՝ 20 կ.*

Մանկատան յերեխաների կյանքից վերցրած այս պատմվածքը մեր պիոներների և աշակերտների համար ընթերցանության լավ նյութ է:

Այստեղ նկարագրված է Մոսկվայից հեռու գտնվող մանկատներից մեկը: Մանկատան սան փոքրիկ Պետիկը դաստիարակչուհուց լսում է Լենինի մեռնելու մասին: Հետո նա տեսնում է լրագրում տպված՝ Լենինի աճյունին այցելող յերեխաների նկարները: Մեր Պետիկը վորոշում է անպայման գնալ Մոսկվա և տեսնել Լենինի աճյունը: Այդպես էլ անում է: Նա իր ճաշի և ընթրիքի հացը պահում է և գիշերը, յերբ մանկատանում բոլորը քնած են լինում, Պետիկը թաքուն դուրս է գալիս և գնում է կայարան, վորտեղ մի քանի անապաստան յերեխաների ընկերակցությամբ մտնում է գնացքում տեղավորված մի արկղի մեջ ու այդ դրությամբ հասնում Մոսկվա: Մոսկվայում մանկատների յերեխաներին միանալով կարողանում է հեշտությամբ տեսնել Լենինի աճյունը և կրկին վերադառնում է մանկատուն:

Բացի գեղարվեստական բավարարություն տալուց, այս գրքույկը մանուկ ընթերցողների համար կունենա նաև դաստիարակչական նշանակություն, յերբ նրանք կըկարդան, թե ինչպիսի ընկերական վերաբերմունք ու աջակցություն են ցույց տալիս Պետիկին իր պատանի ընկերները, վորպեսզի նա կարողանա գնալ և տեսնել իրենց շատ սիրելի Իլյիչի աճյունը:

Գրվածքի լեզուն պարզ է և հասկանալի. ամեն մի պիոներ պետք է անպայման կարդա այս գրքույկը:

**Գ. Ս-յան**

Ս. ԱՈՒՍԼԵՆԴԵՐ, — **ՍԵՎԱՄՈՐԹ ԱՌԱՋՆՈՐԴԸ** *(նեգրական պատմվածք). Թարգմ Սիմակ, պետ. հրատարակչություն. 1927 թ., Յերևան, էջ. 151, գինը 50 կոպեկ:*

Պատմվածքը շատ հետաքրքիր տեղեկություններ է տալիս աֆրիկյան նեգրերի կենցաղի, սովորությունների և վիճակի մասին: Ընթերցողը ծանոթանում է, թե այդ հետամնաց սևամորթ ժողովուրդն ինչպիսի չարքաշ կյանքով է ապրում, ինչպես է պայքարում բնության դեմ՝ ուտելիք ձեռք բերելու համար, և միշտ յենթակա յե բնության արհավիրքներին:

Պատմվածքը մեր առաջ պատկերացնում է նաև, վոր այդ չարքաշ ժողովուրդը, բնության տարերքից և վայրի գազաններից ավելի սարսափելի ու անողոք թշնամի ունի՝ հանձինս իմպերիալիստական պետությունների: Ֆրանսիական իմպերիալիզմի ներկայացուցիչները, վորոնք բռնությամբ տիրացել են նեգրերի յերկրին, վոչ միայն չլսված, գազանային բռնություններ են գործ դնում՝ հարկերը հավաքելու համար, այլև իրենց համար զվարճալի տեսարաններ են սարքում՝ նեգրերի կյանքի գնով: — Որինակ. ֆրանսիացի կապիտանն ու իր կինը փոքրիկ նեգր յերեխային խլում են մորից և տախտակի վրա կապելով գցում են գետը՝ կոկորդիլոսին գրավելու և դուրս հանելու համար:

Պատմվածքը վերջանում է նրանով, վոր նեգրական ցեղերը, ֆրանսիացիների բռնություններից ազատվելու համար, միանում են և ազատագրական անողոք պայքար սկսում նրանց դեմ:

Գիրքը կարդացվում է հետաքրքրությամբ. լեզուն պարզ է ու մատչելի, թեև տեղ-տեղ կան անհարթություններ:

Մեր պատանիներն անպայման պետք է կարդան այս գիրքը:

**Ռ. Հ.**

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԳԻԱ**

Դավթյան Ս., Յենգիբարյան Մ., Հարությունյան Պ., Միրզայան Հ., Սիմակ:

Գրառեպվար № 180 բ. Տիրաժ 1200 Պետհրատի 2-րդ տպարան Յերևանում — 1082

# ԽԵԼԱՑԻ ԺԱՄԱՆՑ ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԵՐԻՆ

## ԽՆԴԻՐ № 3

Այս 9 շրջանակների միջով, չբարձրացնելով ձեռքը, 4 ուղիղ գծեր տանել այնպիսի հաշվով, որպեսզի նրանք անցնեն շրջանակների կենտրոններով։



## ԽՆԴԻՐ № 4

Շուկայում յերկու կին խնձոր էին ծախում։ Յուրաքանչյուրն ունէր 30 հատ խնձոր։ Նրանցից մեկը յերկու խնձորը ծախում էր մի կոպեկի, յերկրորդը՝ յերեք խնձորը։ Այնպես պատահեց, որ յերկրորդ խնձորավաճառուհին պիտի շուկայից փոքր ժամանակով բացակայէր, և նա հանձնարարեց առաջինին ծախել իր խնձորները։ Յերբ երկրորդը գնաց, մոտեցավ մի գրնորդ՝ առաջինից խնձոր գնելու և իմացավ, որ խնձոր ծախող կինը մի զամբյուղի խնձորը 2-ը մի կոպեկի յե ծախում, մյուս զամբյուղինը՝ 3 ը մի կոպեկի։ Սակարկելուց հետո կինը համաձայնեց 5 խնձորը ծախել 2 կոպեկի, ուշադրություն չդարձնելով թե որ զամբյուղից են։ Յերբ յերկրորդ կինը վերադարձավ շուկայից և տեսավ, որ իր խնձորները ծախված են, պահանջեց առաջինից իր փողը, և նա գոյացած 24 կոպեկից ինը կոպեկ ստացավ փոխանակ 10 կոպեկի, ինչպես ինքն սպասում էր։ Ո՞ւր կորավ մի կոպեկը։

## ՀԱՆԵԼՈՒԿ № 5

Ուղեղից թելի կծիկը
շատ պինդ ես բռունցդ պահել,
արի կծիկը յետ տուր
ու փորձիր ես հարցը լուծել։

Քնում ես ամեն օր — գիշեր։
էն էլ վո՞նց — խռմփում անուշ,
ու ըսկի մտքիցդ չի անցնում,
քանի օր, քանի դար ես քնում։

Մի արի ուղեղդ շարժիր,
մի գուցե այս հարցը գտար,
թե յե՞րբ է, որ մարդը քնում է
մի ամիս, մի տարի, մի դար։

## ՍՏՈՒԳԻՐ ՔՈ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆԸ

Իմպերիալիստական պատերազմի ժամանակ մի զինվոր վիրավորվում է գերի յե ընկնում։ Յերբ նրան վերցրին և պատգարակի վրա դրեցին, նա ուշաթափ յեղավ. այդ դրության մեջ էր նա մի քանի ամիս շարունակ։ Ուշքի յեկավ նա բուլղարական մի



հիվանդանոցում և աղոտ կերպով հիշում էր, որ իբր թե իրեն մի քանի անգամ տեղափոխել են յերկաթուղով ու շոգենավով։ Միայն լավ էր հիշում մի բան։ Մեկ անգամ, իր հիվանդության ժամանակ նա ուշքի յեկավ և տեսավ, որ ինքը պառկած է հիվանդանոցում, թշնամի բանակի զինվորների հետ միասին. յերկու-յերեք րոպե նայելուց հետո նա կրկին գիտակցությունը կորցրեց։ Ահա թե ինչ էր տեսել նա լուսամուտից (նայիր նկարը)։

Չնայած նրան, որ նա այդքան քիչ էր նայել լուսամուտին, իր առողջանալուց շատ հետո էլ, կարող էր ճշտությամբ պատասխանել հետևյալ հարցերին.

1. Գիշե՞ր էր, թե ցերեկ։
2. Շո՞գ էր փողոցում, թե ոչ։
3. Տարվա ո՞ր յեղանակն էր — գարուն, ամառ, աշուն, ձմեռ։
4. Մոտավորապես ժամը քանի՞սն էր։
5. Վո՞ր հարկումն էր պառկած։
6. Դեպի ո՞ւր էր նայում լուսամուտը։
7 Ի՞նչ պետության մեջ էր ինքը գտնվում։
8 Գետ կամ նեղուց կա՞ր, թե ոչ։
9. Ի՞նչպիսի շենքեր կային։
10. Ի՞նչպիսի լուսավորություն կար քաղաքում.—գազային, էլեկտրական թե՞ նավթի։
11. Սալահատակված էր փողոցը, թե ոչ։
12. Կային նավեր ջրի վրա.—զինվորակա՞ն էին, ճամփորդակա՞ն, հետո ինչպիսի նավեր էին.—շոգե՞, առագաստավո՞ր և այլն։

Դուք էլ յերկու րոպե նայեցեք այս նկարին, ծածկեցեք այն և փորձեցեք, թե քանի՞ հարցի կարող եք պատասխանել։



Ռեբուս № 7.